# 35 ՏԱՐԻ ԱՌԱՋ ՍՈՎԵՏԱԿԱՆ ԲԱՆԱԿԻ ՓԱՌԱՎՈՐ ՀԱՂԹԱՆԱԿՈՎ ԱՎԱՐՏՎԵՑ ՀԱՅՐԵՆԱԿԱՆ ՄԵԾ ՊԱՏԵՐԱԶՄԸ



▲ Անհայտ զինվորի գերեզմանը Երևանի Հաղթանակի զբոսայգում

▼ Հայկական Թամանյան դիվիզիայի շքերթը Բեռլինի Բրանդենբուրգյան դարպասների մոտ

# ԿԱՐՄԻՐ ԼՈՒՍԱԲԱՑԻՑ ԱՌԱՋ

Պատանի Ղուկասը Կոնդ թաղամասի բարձունքից իր ինքնաշեն հեռադիտակով հետևում էր աստղերի շարժմանը և երազում էր սովորել Պետերբուրգի Պուլկովյան աստղադիտարանում: Սակայն նրա կյանքն ավարտվեց հենց այն տարիքում, երբ շատերը նոր-նոր սկսում են ընտրել կյանքի ուղի:

Երևանի հայկական հոգևոր թեմական դպրոցում սովորելու տարիներին Ղուկասը տարվում է բնական գիտություններով: Մեծ հետաքրքրությամբ կարդում է Դարվինի, Տիմիրյազևի աշխատությունները: Իր զարգացածությամբ աչքի է ընկնում դպրոցում, գրավում ռուսաց լեզվի և գրականության ուսուցիչ, ականավոր մարքսիստ-պատմաբան Արշավիր Մելիքյանի ուշադրությունը: Նրա օգնությամբ ծանոթանում Լ. Վ. Ի. Լենինի, Ստ. Շահումյանի աշխատություններին:

Ղուկաս Ղուկասյանը ընկերոջ՝ Արմենակ Բուդաղյանի հետ պառակտում է դաշնակցականների կողմից ղեկավարվող «Աշակերտական միությունը» և ստեղծում նոր՝ «Մարքսիզմ ուսումնասիրող աշակերտական միություն»:

Ցարիզմի տապալումից հետո՝ 1917 թվականին, 18-ամյա Ղուկասը անցնում է կուսակցության շարքերը և դառնում նրա ակտիվ գործիչներից մեկը: Արմենակ Բուդաղյանի հետ միասին ստեղծում են Երևանի երիտասարդ կոմունիստների «Սպարտակ» կազմակերպությունը: Ղ. Ղուկասյանն ընտրվում է նախագահ: 1919 թվականի մայիսի մեկին լույս է տեսնում «Սպարտակ» թերթը՝ Հայաստանի կոմերիտմիության առաջին տպագիր օրգանը: Այն նվիրված էր աշխատավորների միջազգային համերաշխության օրվան: Դաշնակցական կառավարությունը արգելում է թերթի հրատարակումը և սկսում հետապնդել

60 տարի առաջ, 1920 թվականին, մայիսմեկյան ցույցերը Հայաստանում վերաճեցին զինված ապստամբության: Ժողովուրդը հոգնել էր պատերազմներից ու բռնություններից, երկիրը լի էր անօթևան երեխաներով, սովատանջ գաղթականներով: Ապստամբություններ բռնկվեցին Ալեքսանդրապոլում ու Կարսում, Սարիղամիշում ու Նոր-Բայազետի գյուղերում, Իջևանի շրջանում ու Զանգեզուրում: Ապստամբները կռվում էին անօրինակ խիզախությամբ, բայց ուժերն անհավասար էին:

Մայիսյան ապստամբության հերոսներն ընկան իրենց ժողովրդի վերածննդի հավատը սրտերում: Եվ այդ օրը չուշացավ: Նոյեմբերի 29-ին Հայաստանում հաղթանակեց սովետական իշխանությունը:

հրատարակողներին: Տարեվերջին Ղուկասը մեկնում է Թիֆլիս և կատարում տեղի կուսակցական կազմակերպությունների առաջադրանքները:

1920 թվականի սկզբին, վերադառնալով Հայաստան, ընտրվում է Հայաստանի ղեկավար օրգանի՝ Արմենկոմի անդամ:

Բոլշևիկյան կազմակերպությունը սկսում է նախապատրաստվել մայիսմեկյան ցույցերի:

Ղուկաս Ղուկասյանին հանձնարարվում է ղեկավարել Կարսի նահանգի աշխատավորության զինված ելույթները, գրավել պետական նշանակություն ունեցող հաստատությունները և տեղում հաստատել սովետական իշխանություն:

Նա զինակիցների՝ Խրիստովսկու, Գ. Դուզճակատյանի, Ս. Ծառուկյանի և ուրիշ բոլշևիկների հետ մայիսի 9-ին Կարսի նահանգի դաշնակցականների իշխանությունը հայտարարում են տապալված և հռչակում են սովետական իշխանություն: Իրենց ձեռքն են վերցնում կայարանը, փոստատունը, նահանգային գանձարանը:

Ունեցած սակավաթիվ ուժերով դժվար էր պահպանել այդ ամենը: Ժամանակին օգնություն չի հասնում սպասվող «Վարդան զորավար» զրահագնացքը: Ղ. Ղուկասյանը իր 80 զինակիցներով մի կերպ ճեղքում է ճակատի գիծը, հասնում Արգինա գյուղի ջրաղացի մոտերքը և որոշում մի փոքր հանգստանալ: Սակայն դարանակալ թշնամին վրա է տալիս և ընկրկվում է վերջին ու վճռական մարտը:

Ծանր վիրավոր Ղուկասին ընկերները տեղափոխում են ջրաղաց:

— Գիտեմ, որ այլևս չեմ ապրելու և չեմ տեսնելու արևի ծագումը... Բայց կարմիր արևածագը լինելու է, անպայման լինելու է,— ասում է նա վերջին շնչում:

# ՎՐԵԺ

ՀՈՎԻԿ ՎԱՐԴՈՒՄՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ



Միանգամից ձյուն եկավ: Հաստ, կես մետրանոց շերտով ծածկեց ամեն ինչ: Ես ու Մհերը, ճեղքելով ճռճռացող ձյունը, գնում էինք գողանալու Յուղապատառի և ամբողջ գյուղի միակ ճագարը: Իսկ պատճառն այն էր, որ պատերազմական այդ ծանր օրերին Յուղապատառն հաճախ էր փողոց դուրս գալիս սպիտակ հացի վրա հաստ շերտով կարագ քսած և ուտում էր մեր քաղցած աչքի առաջ: Մի օր էլ, չկարողացանք մեզ զսպել և հող լցրինք նրա յուղապատառին: Այդ օրը երեկոյան, երբ անտառից վերադարձանք, մինչև տուն հասնելը լսում էի Մհերի ճչոցը: Պարզ էր, որ մայրը քաշում էր նրա ականջները: Ես ականջներս շոշափելով ներս մտա ու զգացի, որ պապս ջղայնացած է:

Այդ օրն էլ որոշեցինք հիմա էլ ուրիշ կերպ վրեժ լուծել Յուղապատառից՝ գողանալ նրա ճագարը:

Երկար էինք նախապատրաստվել, սակայն երբ ճագարն ամուր փաթաթած պապիս հին շինելի մեջ, մտանք մեր գոմը, հիշեցինք, որ դանակ չենք վերցրել:

— Մորթե՞նք,— հարցրի ես:

— Բա էլ ինչո՞ւ ենք բերել,— զարմացավ Մհերը:

— Մեղք չի՞:

— Ավելի լավ կանես, գնաս դանակը բերես:

Երեկո էր: Անտանելի, սպիտակ լռություն: Սկսեցի վախենալ, գլխի ընկնելով, որ կարծածիս չափ սրտոտ չեմ: Մտքիս մեջ թպրտում էր վիզը կտրած ճագարը և սպիտակ լռության մեջ կաթ-կաթ կաթում էր կարմիր արյունը:

— Մորթենք ի՞նչ ենք անելու,— ցածրաձայն ասացի ես:

— Գնա դանակը բեր,— պնդեց Մհերը:

Ես դանդաղ դուրս եկա գոմից, ուղղվեցի դեպի տուն: Պապս տրակտորի նմանն հռնդում էր:

— Հրա՞նտ,— կանչեց տատս:

— Դուրս գնամ, գամ:

— Զմրսես, շո՛ր գցիր վրադ:

Երբ վերադարձա, Մհերը բաց էր թողել ճագարին, որը գոմի մի անկյունում կծկված դողում էր:

— Ճիշտ ես ասում,— ասաց Մհերը— արի չմորթենք:

— Հա՛,— ուրախացա ես,— արի չմորթենք:

— Մի բան եմ մտածել,— ասաց Մհերը,—տանենք անտառում բաց թողնենք:

Դուրս եկանք: Ցուրտը ծակծկում էր: Դժվարությամբ հասանք անտառ:

— Փը՛շտ... Գնա՛, փախի՜ր... — կանչում էր Մհերը:

— Փը՛շտ...— կանչում էի ես:

Սակայն ճագարը չէր հեռանում, մի փոքր շրջան էր անում, նորից մոտենում մեզ, կծկվում ոտքերիս առաջ:

— Ի՞նչ անենք,— անհանգստացած ասացի ես, արդեն մրսում էի:

— Փը՛շտ, փը՛շտ, փը՛շտ...

Սակայն ճագարն ավելի էր մոտենում ու կծկվում մեր ոտքերի առաջ:

— Թողնենք, գնանք,— ասաց Մհերը:

Ետ դարձանք, շարժվեցինք դեպի գյուղ: Քիչ հետո, երբ ետ նայեցինք, ճագարը, ձյան մեջ խրվելով ու դուրս թռչելով, գալիս էր մեր ետևից:

— Գնա՛... Փը՛շտ...—կանչեց ջղայնացած Մհերը:

Ճագարը մի պահ կանգնեց, կարծես միտք էր անում ու նորից սկսեց գալ:

— Գյուղին մոտենա, շները կուտեն,— ասացի ես:

Կանգ առանք: Ճագարը մոտեցավ, նստեց Մհերի ոտքերի առաջ: Մհերը կռացավ, գրկեց ու արագ-արագ գնաց դեպի գյուղը:

— Ո՞ւր,— զարմացած հարցրի ես:

— Տանենք դնենք տեղը, մեղք է, շները կխեղդեն:

Ճագարին նորից փաթաթեցինք պապիս շինելի մեջ ու շտապեցինք դեպի Ցողապատառենց տուն: Երկուսիս տրամադրությունն էլ միանգամից բարձրացավ: Մհերը ուրախ պատմություններ էր հիշում ու մենք տեղի-անտեղի քրքջում էինք:

— Տուր մի քիչ էլ ես տանեմ,— ասացի Մհերին, առա ու գրկիս մեջ ամուր սեղմեցի դողդողացող ճագարին:

— Միևնույն է, էլի Ցողապատառի սպիտակ հացի վրա հող կլցնեմ, թող ականջներս պոկեն,—ասացի ես, չնայած այնքան էլ համոզված չէի դրանում:

# ՃԱՄՓԱ

ԱՐՇԱԼՈՒՅՍ ՄԱՐԳԱՐՅԱՆ

Մի բարակ ճամփա կա, որ անտառ է տանում,
Գնում է նա շորոր, ձգվում հեռո՜ւ, հեռո՜ւ,
Հասցնում է նա քեզ բացատը մասրենու,
Ուր կա ճերմակ թիթեռ ու ոսկեգույն մեղու:

Զվարթ մի ճամփա կա, որ անտառ է տանում,
Այնպես վստահ, այնպես մոտ ու մտերմական,
Նա լավ է ճանաչում կաղնիներին հսկա,
Վտակներին անքուն, աղբյուրներին լալկան:

Անհոգ կանչում է քեզ այդ ոլորուն ճամփան,
Սոխակների ապրած թավուտները լռին,
Դեպի նոճիների վրձինները բարակ,
Որոնք նկարում են անտառը լեռներին:

Քեզ հետ զրուցելով սարն է ելնում ճամփան,
Պաղ լճակի շուրթին, լռում է ու մնում,
Դեռ կարող է նա քեզ վերև տանել այնքան,
Որտեղ որ մեր զանգակ գետերն են արթնանում:

# «ԱԽՊՈՐ ԱՐՅՈՒՆ»

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՍԱՐՈՅԱՆ

Օ՜, ծաղիկ իմ լուսե, ծաղկած կրծքին լեռան,
Այսօր երգ եմ հյուսում ես քո մասին,
Դու թերթիկներ ունես նուրբ ու արնանման՝
Որ ժպտում են գարնան լուսաբացին:

Ո՞վ է եղել, տեսնես, քո պատմության վկան
Ու քեզ կոչել տխուր «Ախպոր արյուն»,
Ո՞ւմ մորմոքն է քո մեջ այսպես հավերժական
Ապրում հեռու, անհայտ այս լեռներում:

Ինչո՞ւ, արդյոք, թողած կանաչ մեզ ու արոտ,
Թողած ձոր ու աղբյուր, հանդ ու այգի,
Դու ապրում ես այստեղ՝ այս լեռներում քարոտ՝
Հեռո՜ւ, հեռո՜ւ առվի քնքուշ երգից:

Օ՜, ծաղիկ իմ լուսե, ծաղկած կրծքին լեռան,
Այսօր երգ եմ հյուսում ես քո մասին,
Դու թերթիկներ ունես նուրբ ու արնանման՝
Որ ժպտում են գարնան լուսաբացին:



# ՎԵՐՋԱՊԵՍ ԵՍ ԴՊՐՈՑ ԵՄ ԳՆՈՒՄ

*ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆՅԱՆ*

## «ԱՇԽԱՐՀԱԳՐԱԳԵՏԸ»

Այս դասին ես արդեն այնպես եմ, ինչպես կարմրախայտը մեր Արխաշանա գետակում։ Իսկի հարկավոր էլ չի, որ տանը պատրաստեմ աշխարհագրության դասս։ Պատրաստ չի, հապա ի՞նչ է այս գունազարդ, ընդարձակ ու շքեղ քարտեզը, որ Պատվական վարժապետը կախել է գրատախտակից։ Այդ քարտեզը լուռ է ու շատ խոսուն։ Նա պատմում է մեզ այն ամենի մասին, որ ցուցադրված է աշխարհամասի վրա։ Միայն պիտի նայել ու հասկանալ, թե ինչ է ասում։ Քարտեզը կարդալ պիտի իմանալ։ Իսկ ես կարդալ կարողանում էի։ Թերևս աշխարհագրությունը միակ առարկան էր, որ մեր դասարանում ինձ հետ մրցող չըկար։ Որտեղի՞ց էր եկել այդ ունակությունը՝ ինքս էլ չէի հասկանում։ Գուցե ծնված ու մեծացած լինելով բնության մեջ, փոքրուց ես ծանո՞թ էի նրա լեզվին։ Գուցե գիշերներն աստղերի շարժումը դիտելով, ցերեկները մեր լեռների բարձր գագաթներից ինձ տեսանելի աշխարհին նայելով և մենության մեջ ինձ ու ինձ խորհելով, պրպտելով, իմ մեջ սեր ու հետաքրքրությո՞ւն էր արմատավորվել բնության երևույթների նկատմամբ։ Մի բան պարզ էր, որ Դիլիջանի անհորիզոն ձորում ապրած երեխան այն մտապատկերը չպիտի

---

*Սկիզբը՝ NN 1—4։*

ունենար իրեն շրջապատող աշխարհի մասին, ինչ կարող էր ունենալ Բազումի բարձունքներից ցած նայողը:

— Է՛հ, էս փոքի մեջ ի՞նչ են տեսնում, որ ի՛նչ իմանան,—այսպես պարզունակ էի բացատրում իմ ու գյուղաքաղաքի երեխաների տարբերությունը:

— Ստեփա՛ն Անանյան, գրատախտակի մոտ...

Նայում է ինձ իր բարի աչքերով ու մտքում, գիտեմ, նույնն է՝ «Դու բնության զավակ ես, բնությունը դու սրտանցից լավ պիտի հասկանաս...»

«Բարի» ասացի՞: Ո՛չ, Պատվական վարժապետը բոլորի նկատմամբ չէր բարի: Ես նրա համակրանքը շահեցի հենց առաջին դասից: Բարակ մեջքին լայն գոտին ամուր կապած, ինքն արագաշարժ և մարմնով ոչ խոշոր, կարճ խուզած բեղիկների անկյուններում մի թաքուն ժպիտ, դիմում է ինձ խրախուսական տոնով.

— Հապա մի ցո՛ւյց տուր Էլբուրսի լեռները... Ա՛ռ, ցո՛ւյց տուր այս փայտիկով...

Քանոնի ծայրով կիսալուսնաձև մի գիծ քաշեցի Կասպից ծովի հարավային եզրերով՝ սուր ծայրերը դեպի վեր:

— Վարժապետ, Էլբուրսը դա չի,— տեղից վեր կացավ կլորիկ թշերով, լավ հագնված և լավ սնված այն տղան՝ Ամասիան, որը հենց առաջին օրից վերևից էր նայում ինձ՝ գյուղաքնակիս: Եվ առևտրական Մատինյանցի հանդուգն որդին, առանց վարժապետի թույլտվության, վստահ քայլքով մոտեցավ գրատախտակին ու մատը դըրեց Կովկասյան լեռնաշղթայի ամենաբարձր կատարին,—Էլբուրսն ա՛յս է, ա՞յ...

Այդ Ամասիան դասարանում իրեն այնպես ազատ էր պահում, կարծես իր հոր խանութում լիներ: Պատվական վարժապետը հանդիմանանքով գլուխն օրորեց և դարձավ ինձ.

— Շարունակի՛ր, Ստեփա՛ն Անանյան:

— Վարժապե՛տ, Ամասիայի ցույց տվածը Էլբուրսը չի, Էլբրուսն է... Էլբուրսը լեռների մի շղթա է, իսկ Էլբրուսը մի լեռ է,— ուղղեցի ես:

— Այո՛, դու իրավացի ես, շարունակի՛ր...

Քրթմնջոցն ընկավ դասարանը, Ամասիան ծաղրի արժանացավ, երևի դրանից էր, որ վրդովված վագրի աչքերով էր նայում ինձ. «Ո՞նց թե, սարից եկած մի տավարած իմ պատիվը ոտի տակ տա՞...»—ասում էր նրա հայացքը:

Այդ չնչին դեպքից Ամասիան հետագայում իմ հակառակորդը դարձավ: Բայց ես շահեցի... Թեև դեմուդեմ նայում էի դասարանին, բայց այն առավելությունն ունեի, որ կարող էի ծուռ աչքիս պոչով նկատել ձախ անկյունում նստած Բավականին և նրա շարմաղ դեմքին բավականության նման մի բան նշմարել: Երևի այդ բավականությունը ոչ այնքան ինձ համակրելուց է բխում (էս ինչե՞ր է մտքովս անցնում, նա իսկի ինձ համակրած կա՞ որ...), այլ նրանից, որ գյուղից եկած իր ընկերները իրենց խելքով արդեն գրոհ են սկսել քաղաքի «մանր բուրժուազիայի» դեմ:

— Իսկ ի՞նչ կարող ես ասել այդ լեռների մասին,—դիմեց վարժապետս ինձ սիրալիր և ես հասկացա, որ ամբարտավան տղային հասցրածս բարոյական ապտակը վարժապետիս սրտովն է:

Ես ուշադիր նայում եմ այդ լեռներին, նրանց գույներին, մտքումս կարդում եմ ու աշխատում եզրակացություններ հանել:

— Աբեղյանի դասագրքում բան չկար այդ լեռների մասին,—փնթփնթացի ես:— Իսկ եթե կցանկանաք, ես իմ սեփական ենթադրությունները...

Զգացի, որ համեստության չափն անցնում եմ, խոսքս կիսատ թողեցի:

— Այո՛, այո՛, նայի՛ր ու արա քո ենթադրությունները:

— Միայն ինձ օգնեցե՛ք մի հարցում:

— Սիրով:

— Քարտեզի գույներից երևում է, որ ծովի արևելյան կողմը մեծ անապատներ են, իսկ հյուսիսում, արևմուտքում՝ չոր տափաստաններ: Որ այդպես է, բա ո՞ւր են գնում էդ հայվարա ծովի գոլորշիները...

— Հայվարան ո՞րն է, ա՜յ տղա,— ծիծաղելով հարցրեց ուսուցիչս՝ Ծիծաղողներ եղան նաև դասարանում, իսկ ամենից բարձր՝ Ամասիան. երևի սիրտը հովացավ: Աչքիս պոչով դարձյալ նայեցի Բավականին, կարմրեցի, քրտնեցի ու կմկմալով պատասխանեցի.

— Այսինքն... մեծ, է՛լի...

— Այո՛, Կասպից լիճը շատ մեծ է՝ ամենամեծ լիճն աշխարհում: Դրա համար էլ ծով են ասում,— լրջանալով բացատրեց վարժապետը:— Եվ այդ ծովի ջուրը շատ է գոլորշիանում, որովհետև երեք կողմից շրջապատված է կիզիչ անապատներով և չոր տափաստաններով: Իսկ ո՞ւր են գնում այդ գոլորշիները,— հարցիս հարցով պատասխանեց վարժապետս:

— Դե որ ամեն տեղ անապատ է, ուրեմն իր գոլորշիները տալիս է Էլբուրսին... Ուրեմն քամիները... ծովից դեպի այդ լեռներն են փչում...

— Ապրե՛ս,— պայծառացավ վարժապետիս դեմքը:— Հետո՞, դրանից ի՞նչ կեզրակացնես:

— Հետո՞... հետո՞... Ասե՛մ... Եթե Կասպից ծովից եկող ամպերը դեպի հարավ են շարժվում, պիտի դեմ առնեն Էլբուրսի լեռներին և իրենց բեռը թափեն նրանց լանջերին... Որովհետև... որովհետև այդ լեռները բարձր են, ամպերը նրանց վրայով չեն կարող անցնել Պարսկաստան:

— Բա՞րձր... Ո՞րտեղից գիտես:

— Քարտեզն է ասում: Նրանք շագանակագույն են, իսկ գագաթը, անա, Դեմավենդը, հինգ վերստից ավելի է, այսինքն մեր Արարատից բարձր...

— Լա՜վ... ամպերը իրենց բեռը թափեցին, հետո՞, դրանից ի՞նչ...

— Այն, որ Էլբուրսի հյուսիսային լանջերին պիտի լինի փարթամ բուսականություն:

Աչքիս պոչով խրախուսանք եմ նըկատում Բավականի դեմքին և դրանից թև առած՝ արագացնում եմ թափս:

— Ի՞նչ, օրինակ...

Հարցնում է վարժապետս ու չի կարողանում թաքցնել իր ներքին հրճվանքը:

— Օրինակ, կարող են լինել կաղնուտներ, շմբալոթի ծառեր...

Խոսքս բերանումս մնաց. այդ ի՞նչ սրտալի էր քրքջում Ամասիան իմ շըմբալոթի վրա:

Ստիպված վարժապետս էլ ծիծաղեց.

— Ա՜յ տղա, շմբալոթը ո՞րն է:

— Է՜ն էլի, որ հարսանիքում շաղ են տալիս... պոպոքի ու տխիլի հետ...

Դասարանում բարձրացավ անզուսպ մի ծիծաղ: Նկատեցի, որ աստվածուհիս մռայլվեց: Իսկ իմ հավատարիմ ընկեր Գևորգը զայրույթից կարմրատակել է:

— Շագանա՛կ ասա, թող ձեռները կտրեն,— գոչեց նա ու լացակումած նստեց տեղը:

— Այո՛, շագանակ... ընկույզ... նաև կլինի վայրի խաղող...

— Ինչո՞ւ պիտի լինի...

— Որովհետև ծովից գոլորշիներ է ստանում... անտառը մերձ... մերձ... մերձարև...— կմկմացի ես:

— Մերձարևադարձայի՞ն...



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ



— Այո՛, մերձարևադարձային պիտի լինի,— սիրտ առա ես և համարձակություն ստանալով, առաջ գնացի իմ ենթադրությունների մեջ.—Ուրեմն, այնտեղ կլինեն նաև ապելսինի ծառեր...

— Ապելսի՞ն...

— Ասա նարի՛նջ... նարինջ ասա,—ցածր ձայնով հուշեց մեր Անանուխը առաջին նստարանից:

— Այո՛, նարինջ...

— Իսկ դու նարինջ տեսե՞լ ես, փոքրի՛կ:

— Այո՛, իմ փեսան, որ Բաքվից եկավ, հետը նարինջներ բերեց... Հա՛, վարժապե՛տ,— աշխուժացա ես,— նարինջները Փեհլևիից էին ստացել, Էլբուրսի փեշերից... ուրեմն ես ճիշտ եմ...

Այնպես ուրախացա, կարծես Փեհլևիի այգիներն ինձ նվիրեցին. ախր փեսայիս բերած նարինջներով հաստատվեց իմ «աշխարհագրական ենթադրությունը»:

— Հիանալի է, շարունակի՛ր պեղել Էլբուրսի գաղտնիքները,— կիսակատակ ասաց ուսուցիչս:

— Եթե նարինջ կա, ուրեմն էն երկրում փորթուգալի ծառեր էլ պիտի լինեն:

Դարձյալ քրքիջ բարձրացավ ու մեկի կոպիտ ձայնը.

— Փորթուգալս ո՞րն է, տո՛...

— Ես ի՞նչ գիտեմ... չեմ տեսել...

փեսաս ասաց, որ նարինջի պես է, բայց նրանից փոքր,— շփոթված պատասխանեցի ես:

— Լռեցե՛ք, երեխանե՛ր, այս դասը մենք երկարացնելու ենք՝ ցույց տալու համար, թե ինչպե՛ս պիտի խոսեցնել այս անշունչ թղթին՝ քարտեզին,— ծանըր-ծանր ասաց վարժապետը:— Եվ ինչպե՛ս պետք է բնության մի երեվույթից հասկանալ հաջորդը: Իսկ այդ հաջորդից բխեցնել նրա հաջորդը, և այսպես անվերջ... Փորթուգալը, երեխանե՛ր, մանդարինն է, որից Ամասիան անպայման կերած կլինի...

— Ի՞նչ մեծ բան է, որ կերած չլինեմ,— լսվեց հպարտ պատասխանը:

— Շարունակե՞մ, թե՞ հերիք է,— հարցրի ես: Նեղվում էի Ամասիայի և իրեն համակիր մի քանի կոկլիկ հագնըված տղաների անբարյացակամ հայացքներից, նրանց արհամարհանքը չէի կարողանում տանել: Մյուս կողմից նկատում էի, որ ամբողջ դասի ընթացքում իմ շուրջը պայքար է գընում գյուղից եկած իմ հողագործ ընկերների և քաղաքի տղաների միջև: Կարծես դասարանը երկու խմբի է բաժանվել, կարծես մրցություն է տեղի ունենում այդ խմբերի միջև և այդ մրցության մեջ ինձ վճռական դեր է հատկացված: Երբ այդքանը գլխի ընկա, բնական համեստությանս և ամոթխածությանս միջից գլուխ բարձրացրեց Անանյանների ցեղական արժանապատվությունը: Դրան ավելացավ նաև Աստղիկ սատվածուհու խիստ հրամանը, որ նա արձակեց իր զայրացած աչքերով. «Գրողի՛ անցիր, ըսրանք ո՞վ են որ...» «Հիմա կսկսեմ... Բա ես Դալի Սաքոյի ցեղից չե՞մ...» հայացքովս պատասխանեցի ես ու ըսկըսեցի, ո՜նց սկսեցի:

Հանդուգն մի հայացքով սաստեցի իմ հակառակորդին և առանց ուսուցչիս հրավերին սպասելու, համարձակ շարունակեցի.

— Պարո՛ն վարժապետ, ես կարող եմ նաև ասել, թե ինչ կենդանական աշխարհ ունեն Էլբուրսի լեռները:

— Մի՞թե... Դարձյա՞լ ենթադրությամբ...

— Այստեղ ո՛չ մի ենթադրություն չկա: Դե որ մի տեղ մեծ-մեծ անտառներ են ու էդ անտառներում էլ շատ է վայրի միրգը՝ ընկույզը, կաղինը, պնդուկը, շագանակը, այնտեղ այդ մրգերի սիրահար կենդանիներ կբնակվեն՝ վարազներ, արջեր, եղնիկներ, եղջերուներ...

— Ապրե՛ս, հի՜նգ ու խաչ,— բացականչեց վարժապետս, և նրա այդ խոսքի վրա սիրտս թունդ առավ: Նայեցի ընկերներիս՝ քիչ է մնում տեղներից վեր թռչեն, ծափահարեն, կամ մի խենթություն անեն՝ են իմ շեկլիկ, երկարուկ, թարթիչները ճերմակ ընկեր Դողոնը, լուրջ, խելացի և սև աչքերով Գևորգը, մեր Անանուխը, որի սիրուն դեմքի վրա գոհունակության ժպիտ էր խաղում: Բոլորի դեմքերին էլ ես հետևյալն էի կարդում.

— Հը՛, կերա՞ք, շոկոլա՞դ ուտողներ...

Միայն Բավականն էր զուսպ: Բայց և չէր թաքցնում, որ գոհ է: Այդքանն էլ բավական էր, որ իմ թևերը երկարեին:

Եվ անկաշկանդ, և այս անգամ արդեն առանց կակազելու, շարունակում եմ գրոհ գրոհի հետևից և նույնիսկ հայերեն մաքուր շարադրանքով,— չէ՞ որ դեռևս երրորդ բաժանմունքից հայտնի էր իմ այն շարադրությունը, որ մեր Արմենը հետը տարավ

Թիֆլիս՝ «Հայկերին» հանձնելու: Ուրեմն և թող ընթերցողը չզարմանա, որ չորրորդ բաժանմունքի մի աշակերտ խոսում է ահա այսպես.

— Եվ որովհետև Էլբուրսի հյուսիսային լանջերին կան մերձարևադարձային անտառներ, ուրեմն այդ անտառները պետք է խճճված լինեն լիանոսներով, մոշի ու մոռի և ուրիշ բաների թփուտներով, անանցանելի թաքստոցներով, ուր կարող են լինել փասիաններ, ծառերի վրա դարան մտած հովազներ և... կարող է նույնիսկ վագր էլ լինել, որովհետև կա նրա թե՛ թաքստոցը, թե՛ սիրած որսը՝ վայրի խոզեր ու այծյամներ... Իսկ լեռների բարձունքները, անտառներից դուրս մերկ պիտի լինեն՝ ժայռոտ, քարքարոտ, հետևապես և այնտեղ վայրի այծերի հոտեր պիտի պատահեն...

— Ապրե՛ս, այդպես էլ կա... հինգ ու խաչ...

Եվ ուսուցիչս գրկեց ինձ:

Ահա այսպես են անցել աշխարհագրության և բնագիտության իմ բոլոր դասերը նաև հետագա օրերին, ամիսներին, տարիներին:

Աստված ինձ միայն այդ ընդունակությունն էր տվել, մնացածներում հեչ բան էի, եթե չհաշվենք, իհարկե, շաբադրություններս:

Բայց այդքանն էլ հերիք էր, որ հոտաղների մեր խումբը մարտահրավեր նետեր քաղաքում ապրած փափկասուն տղաներին.

— Հը՛, բուլկի՛ ուտողներ, ո՞նց էր... կերա՞ք...

Այսպես էր, ահա, ձևավորվում ապագա «ինքնուս կենսաբանը...»

ՎԵՐՋ

ԱՐՁԱԳԱՆՔՈՒՄ ԵՆ ՏՊԱԳՐՎԱԾԻՆ

«ԱՆՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆ ԴԱՍԱՐԱՆՈՒՄ... ԻՆՉՈՒ»

# ԻՍԿ ԻՆՉ-ՈՐ ԺԱՄԱՆԱԿ

Մի անգամ տղաներից մի քանիսը փախել էին դասերից: Այդ օրը ես և ընկերուհիս հերթապահում էինք դասարանում: Դասի ժամանակ, երբ ուսուցչուհին հարցրեց մեզ, թե ովքեր են բացակայում, մենք տվեցինք բացակայողների անունները և ասացինք, որ դրանք նախորդ դասերին ներկա էին: Զանգը տալուն պես, երբ մենք դուրս եկանք դասարանից, բոլոր աշակերտները՝ հատկապես տղաները, շրջապատեցին մեզ և սկսեցին երկուսիս «դավաճաններ», «մատնիչներ» անվանել: Իսկ ի՞նչն էր մեր մեղքը: Չէ՞ որ չէինք կարող խաբել ուսուցչուհուն:

Այս դեպքից օրեր անց աղջիկներին մոտեցան մի քանի տղաներ և ասացին.

# ԱՍՊԵՏՈՒԹՅՈՒՆ Է ԵՂԵԼ

— Լսեք, մեր հայոց լեզվի շարադրությունը պիտի գրեք:

Այն աղջիկները, որոնք, չգիտես ինչու, վախենում են մեր դասարանի տղաներից, վազեցին կատարելու նրանց պահանջը: Իսկ մի մասը մնաց անշարժ: Տղաներից մի երկուսն էլ մոտեցան մեզ, թե.

— Աղջիկներ, հանրահաշվի տնային աշխատանքները մեզ համար էլ գրեք:

Մենք մերժեցինք: Երբ հանրահաշվի դասին ուսուցչուհին այդ տղաներին «երկու» նշանակեց տնային առաջադրանքները չկատարելու համար, նրանք ըսկըսեցին պատրվակներ հորինել «երկուսից» խուսափելու համար: Բայց քանի որ ուսուցչուհին հաճախ էր լսել նրանցից նույն պատճառաբանությունները, չհավատաց: Դասամիջոցին այդ տղաները մոտեցան և սկսեցին նախատել մեզ. «Էլ որտե՞ղ է ձեր ընկերասիրությունը... Ձեր պատճառով մենք «երկու» ստացանք»:

Իմ կարծիքով, մենք ճիշտ էինք վարվել: Բայց եթե նրանք մեզ մոտենային և խնդրեին բացատրել դասը, մենք մեծ հաճույքով կբացատըրեինք: Նրանց փոխարեն գրելը դա ոչ թե ընկերասիրություն է, այլ անընկերասիրություն:

Հաջորդ օրը մեզ մոտեցավ մեր դասընկերներից մեկը և խնդրեց մեզ բացատրել դասը: Մենք սիրով կատարեցինք նրա խնդրանքը: Իսկ երեկվա «երկու» ստացող տղաները սկըսեցին ծիծաղել նրա վրա, ով մեզնից խնդրել էր դասը բացատրել:

— Բացատրելը քո ինչի՞ն է պետք: Դու ասա թող մեկը քո տեղը գրի և վերջ:

Ես նույնպես կարծում եմ, որ անհաշտությունը դասարանում և վատ հարաբերությունները լավ արդյունք չեն տալիս: Բոլոր դեպքերում, մենք՝ նրանց փոխարեն դաս չգրող աղջիկներս, մեղք չունենք: Էլ ինչո՞ւ մեզնից նեղացան ու երես դարձրին:

Մի՞թե տղաների մոտ վերացել է ասպետությունը, մեծահոգությունն ու արդարամտությունը:

*ՌՈՒԶԱՆՆԱ ՂԱՐԱԳՅՈԶՅԱՆ*

*Կիրովական,*
*Հովհ. Թումանյանի անվ.*
*դպրոց, 8-րդ դասարան*

# ԶՐՈՒՅՑՆԵՐ ԼԵԶՎԻ ՄԱՍԻՆ

*ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ*
*բանասիրության դոկտոր*

## 25. ԻՆՉՊԵ՞Ս ԼՈՂԱԼ ԲԱՌԵՐԻ ԾՈՎՈՒՄ

Ո՞վ չգիտի որ,— հարցին հարցով կպատասխանեն ոմանք,— եթե խոսքը վերաբերում է խոսելուն կամ գրելուն, ապա ամեն ոք կարողանում է և՛ խոսել, և՛ գրել, այսինքն՝ լողալ բառերի ծովում:

Բայց լողա՛լ էլ կա, լողա՛լ էլ: Խնդիրն այն է, թե ով ինչպե՛ս է լողում. մարդ կա, որ լողում է ձկան պես, բառերի ծովում զգում է իրեն, ինչպես ձուկը՝ ջրում, մարդ էլ կա, որ հազիվ է մնում ջրի երեսին:

Այնպես, ինչպես շախմատ խաղալիս ուժեղ շախմատիստն էլ, թույլն էլ նույն բանն են անում, երկուսն էլ ընտրություն են կատարում հերթական քայլի անհաշիվ ու անհամար հնարավորությունների մեջ, բայց սար ու ձորի տարբերություն կա նրանց ընտրության որակի միջև: Դրանով էլ պայմանավորված է նրանց խաղի որակի տարբերությունը, և դու մեկի խաղին հետևում ես հետաքրքրությամբ, իսկ մյուսի խաղին՝ ձանձրույթով: Այդպես էլ բառապաշարից լավ ընտրություն կատարողի խոսքը լինում է հետաքրքրքիր՝ հարուստ, կենդանի, համով-հոտով, գրավիչ, մյուսինը՝ տափակ, աղքատիկ, անհամ, անհրապույր:

Կենսաբանության մեջ հայտնի է, այսպես կոչված, «բնական ընտրության» հասկացությունը: Փորձենք դա տեղափոխել խոսքի ասպարեզը:

Առօրյա կյանքում մարդիկ խոսելիս կարծես առաջնորդվում են բնական ընտրությամբ՝ նրանք բառերն ու դարձվածքները ընտրում են ըստ իրենց բնական հակումների, ըստ իրենց բնավորության, և դա էլ իր կնիքն է դնում մարդու խոսքի վրա, այնպես որ ամեն մեկի անհատականությունը երևում է իր իսկ խոսքից:

Բայց դա ինչպե՞ս է լինում, չէ՞ որ բոլորն էլ ջուր են խմում նույն աղբյուրից, գործի են դնում նույն համաժողովրդական լեզվի բառապաշարը:

Սա պարապ հարց չէ: Դրա պատասխանը որոնելիս մենք հանդիպում ենք լեզվի մի գաղտնիքի, որ առաջին անգամ հայտնաբերել է մեծ գիտնական Վիլհելմ Հումբոլդտը: Դա այն է, որ լեզուն միաժամանակ և՛ ընդհանուրին պատկանող հասարակական երևույթ է, միանգամայն անկախ ամեն մի առանձին մարդու կամքից ու գիտակցությունից, և՛ խորապես անհատական երևույթ, որ արտացոլում է ամեն մի առանձին մարդու մտածողության ու բնավորության յուրահատկությունները:

Ինչի՞ շնորհիվ: Ընտրություն կատարելու:

Վերը խոսք եղավ, այսպես ասած, «բնական ընտրության» մասին: Հիմա ես կուզենայի ձեզ առաջարկել «գիտակցական ընտրություն», եթե կուզեք նաև՝ «արհեստական ընտրություն» հասկացությունները այն դեպքերի համար, երբ մարդ խոսքի ծովի մեջ

ընտրություն է կատարում արդեն ոչ միայն ըստ բնավորության, այսպես ասած, բնական մղումով, այլ նաև ըստ ձեռք բերած իմացության: Ուրիշ խոսքով՝ ձեռք բերած լեզվական կուլտուրայի շնորհիվ, զուր չէ, որ «կուլտուրա» բառը հայերեն հենց «մշակույթ» է կոչվում (թեև, ասենք նաև, դրանք միշտ չէ, որ կարող են փոխարինել միմյանց, և դրա մեջ ոչ մի վատ բան չկա, ընդհակառակը, դա հարըստացնում է մեր լեզուն՝ մի դեպքում մեկը կարելի է ասել, մի այլ դեպքում՝ մյուսը):

Այս գիտակցված ընտրության պաբագան մեծ դեր է խաղում խոսքի ասպարեզում: Դա պարզապես պարտադիր է իրեն գրագետ համարող ամեն մարդու համար:

Բայց սա ընտրության դեռ ամենավերին աստիճանը չէ: Ամենավերինը «ստեղծագործական ընտրությունն» է, որի վարպետները գրողներն են, բանաստեղծները: Իհարկե, լա՛վ գրողներն ու բանաստեղծները, որոնք գեղարվեստական խոսքի ճշմարիտ արժեքներ են ստեղծում: Իսկ խոսքի արժեք ստեղծվում է այն դեպքում, երբ «ամեն մի բառ, ամեն մի ձև կամ ոճ մի մեծ ստեղծագործություն է ու մի ամբողջ աշխարհ» (Հովհաննես Թումանյան):

Ահա այդպիսի բառ, խոսքի այդպիսի ձև կամ ոճ ընտրելու և գտնելու համար է, որ տքնում են բանաստեղծները: «Մի հատիկ բառի համար,— գրել է Մայակովսկին,— հազարավոր տոննա բառահանք ես շուռ ու մուռ տալիս... մի փութ աղ ես ուտում ու հարյուրավոր գլանակների ծուխ կուլ տալիս մարդկանց արտեզյան խորքերից մի թանկագին խոսք դուրս բերելու համար»:

Սա հենց այն է, ինչ կոչվում է «խոսքի տառապանք»: Ամենից շատ դա բաժին է ընկնում բանաստեղծներին, չէ՞ որ «բանաստեղծ» հենց «խոսք ստեղծող» է նշանակում, «բան» բառը շատ, անսպասելիորեն շատ իմաստներ ունի (նայեցեք բառարանը, հետաքրքի՛ր է), բայց դրա առաջին իմաստը «խոսքն» է: Իսկ խոսքը, ինչպես գիտեք, բառերից է ստեղծվում: Ահա ինչու բանաստեղծները, կարծես, լողում են բառերի մեջ, բառերի օդն են շնչում: Մեր օրերի լավ բանաստեղծներից մեկը՝ Ռազմիկ Դավոյանը, արել է այսպիսի գեղեցիկ խոստովանություն՝

...Ես իմ ողջ կյանքում
Բառեր եմ քարշ տալիս,
ամեն տեսակ բառեր,
ամեն գույնի, ձևի,
սակայն այսօր նրանք հոգուս հովիտներում
փոխարկվում են փափուկ, տաք անձրևի:

Ինչպե՞ս է դա կատարվում: Մեր այս զրույցը կարդալով, դուք իսկույն կարող եք ասել՝ իհա՛րկե, ընտրության շնորհիվ, այս դեպքում դրա բարձրագույն ձևի՝ «ստեղծագործական ընտրության»:

Մարդիկ ձգտում են բառապաշարի ծովից գտնել այն, ինչ իրենց հարկավոր է, այն, որ ամենից հարմարն է իրենց միտքն արտահայտելու համար: Բոլորն էլ ձգտում են, բայց տարբեր չափով են հասնում հաջողության:

Հնից ի վեր, աևեհեր դարերի խորքերից մինչև այսօր քերականները, լեզվաբանները, գրականագետները մշակում են այդ միջոցները լավ խոսքի ձևերն ու հնարները: Դրանք հավասար արժեք չեն ըստ կարևորության: Կան շատ կարևոր և նվազ կարևոր միջոցներ: Այս զրույցների մեջ մենք տեղ կտանք այն միջոցներին, որ թվում են առավել կարևոր: Բայց նախքան այդ շարքին անցնելը մի բան պիտի իմանալ ամենից առաջ, որի մասին՝ հաջորդ անգամ:

## *Մասնագիտություն ընտրելու ճանապարհին*

Երևանի գեղարվեստական-տեխնիկական № 8 ուսումնարանի ծնունդը ուրախություն պատճառեց մեր արվեստագետներին, ինչպես և Մարտիրոս Սարյանին, որը հանդիսավոր բացման ժամանակ կտրեց ժապավենը:

Ուսումնարանը արդեն բոլորել է հիմնադրման տասնհինգամյակը:

Նրա սաների ու վարպետների աշխատանքները ցուցադրվել են Մոսկվայի ԺՏՆՑ-ի պրոֆտեխկրթության տաղավարում, արժանացել են ցուցահանդեսի ոսկե, արծաթե և բրոնզե 120 մեդալների, ցուցադրվել են նաև Ճապոնիայում, Կուբայում, Մոնղոլիայում, Լեհաստանում, Ֆինլանդիայում, Հընդկաստանում և Աֆրիկայում:

«Հին արվեստներին՝ նոր կյանք» նշանաբանով են գործում գրեթե բոլոր տասնմեկ բաժինները: Սովորողները նույնությամբ չեն պատճենահանում հին գորգերի, սափորների, գավաթների, փայտե, քարե բազմազան իրերի, ասեղնագործ աշխատանքների նմուշները: Նրանք այդ ամենից օգտվում են ստեղծագործաբար, յուրացնում այդ արհեստների ու արվեստների դարավոր փորձը:

Այստեղ կարող են ընդունվել միջնակարգ դպրոցն ավարտած այն աշակերտները, ովքեր «ոսկե ձեռքեր ունեն»: Ուսումնարանի գրեթե բոլոր բաժիններում արհեստ և արվեստ հասկացողությունները նույնացել են. եթե ոսկերչական կամ մեկ այլ բաժնում սովորողը գեղեցկատես մետաղե զարդերով այնպիսի բարձրարժեք սափոր է ստեղծում, որ շրջագայելով մեր և արտասահմանյան տարբեր երկրներում, արժանանում է ուշադրության, պատվոգրի ու մեդալի, ապա այն իրավամբ արդեն արվեստի գործի համարում ունի: Սովորողները կես տարի արտադրական ուսուցման են լինում տեղական արդյունաբերության մինիստրության հուշանվերների ֆաբրիկայում, ոսկերչական գործարանում, Վարդաշենի ժողարհեստների կոմբինատում, հախճապակու գործարանում: Ավարտելուց հետո նրանք հիմնականում այդ ձեռնարկություններում էլ աշխատում են:

Ծրջանավարտների մի մասն էլ մանրանկարչական, քանդակագործական, փայտամշակման և այլ խմբակներ է ղեկավարում պիոներպալատներում, կուլտուրայի տներում, դպրոցներում:

Ուսումնարանի կապը սերտ է դըպրոցների հետ: Տարվա ընթացքում հաճախ ուսումնարան են հրավիրվում աշակերտական խմբեր, ծանոթանում խմբակների աշխատանքներին, կատարած գործերին: Երբեմն էլ շրջանավարտների դիպլոմային աշխատանքների լավագույն նմուշները ցուցադրում են դպրոցներում: Այդ շրջիկ ցուցահանդեսները օգնում են բարձր դասարանցիների մասնագիտական կողմնորոշման գործին:

# ՀԻ՛Ն ՆՈՐ ԿՅԱՆՔ

ՓԱՐԻԶԻ ԱՍՏՎԱԾԱՄՈՐ ՏԱՃԱՐԻ ԴՌՆԵՐԻՑ ՄԵԿԸ ՀԱՅ ՎԱՐՊԵՏ Է ՊԱՏՐԱՍՏԵԼ։ ԴՌԱՆ ՄԻ ԱՆԿՅՈՒՆՈՒՄ ՔՎԱՐԹՆՈՑԻ ԽՈՐԱՔԱՆԴԱԿԸ ԿԱ, ԿՈՂՔԻՆ՝ ՀԱՅԿԱԿԱՆ ԳՐԵՐ։

ՋԵՐՄՈՒԿ ԱՌՈՂՋԱՐԱՆԻ ԳԵՂԵՑԻԿ ԴՌՆԵՐԸ ԿԱՌՈՒՑԵԼ ԵՆ ԵՐԵՎԱՆԻ ԳԵՂԱՐՎԵՍՏԻ ՈՒՍՈՒՄՆԱՐԱՆԻ ՓԱՅՏԱԳՈՐԾՆԵՐԻ ԽՄԲԻ ՍԱՆԵՐԸ։



# ՓԱՅՏԻ ԳԵՂԱՐՎԵՍՏԱԿԱՆ ՄՇԱԿՈՒՄ

Փայտի մշակման արվեստը Հայաստանում մեծ զարգացում չի ապրել, որովհետև տեղական փայտանյութը համարվել է օգտագործման համար ոչ պիտանի։ Թանկ փայտանյութերի փոխարեն (աֆրիկական սև փայտ, երկաթի փայտ) Հայաստանում այժմ օգտագործում են ընկուզենի և հաճարենի, որոնք քիմիական մշակման ենթարկելուց և փայս կոչվող փոշիով երանգավորելուց հետո ոչնչով չեն զիջում թանկ փայտանյութերին։

Վերջերս Երևանում, Կարմիր բանակի փողոցի վրա բացվեց մի շատ հետաքրքիր ցուցահանդես՝ նվիրված փայտագործության արվեստին։ Ցուցահանդեսում քիչ չեն այն ցուցանմուշները, որոնց հեղինակները գեղարվեստի ուսումնարանի շրջանավարտներն են կամ սաները։ Դա արդեն ապացույց է, որ փայտարվեստը Հայաստանում ապրում է նոր զարգացում։

Ուսումնարանի փայտի գեղարվեստական մշակման խմբում աշակերտը սկզբում սովորում է փայտի լեզուն, բնավորությունը։ Ուսուցումը սկսվում է պարզ, գծային աշխատանքներից և ավարտվում բարդ ռելիեֆային փորագրություններով։ Աշակերտները սովորում են պատրաստել սկուտեղներ, զարդատուփեր, սպորտային գավաթներ և այլն։ Սովորողների աշխատանքներից շատերը արժանացել են բրոնզե, արծաթե մեդալների, ցուցադրվել են Լեհաստանում, Ամերիկայում, Մոսկվայում և այլուր։

Ամեն տարի ուսումնարանն ավարտում են 35 փայտափորագրիչներ։ Շրջանավարտների զգալի մասը աշխատանքի է տեղավորվում Վարդաշենի ժողովրդական արհեստագործական կոմբինատում և Երևանի դաշնամուրի գործարանում։ Իսկ ով ցանկանում է ավելի խորանալ փայտարվեստի մեջ, շարունակում է ուսումը բուհերի համապատասխան բաժիններում։

Փայտագործների չորս խմբի վարպետներից երեքը՝ Աշոտ Կարաբեկյանը, Արա Յոնջյանը և Ավետիս Չըմբըրյանը ուսումնարանի նախկին շրջանավարտներից են։

Մեր հին հանճարեղ վարպետների՝ Թորոս Ռոսլինի, Սարգիս Պիծակի, Հակոբ Ջուղայեցու, Գրիգոր Տաթևացու, Թորոս Տարոնացու ու մյուսների ստեղծագործությունները իսկական ներշնչանքի աղբյուր են մանրանկարչական խմբի անդամների համար: Պատանի ծաղկողները աշխատում են ամենատարբեր նյութերի վրա՝ փայտի, կաշվի, թղթի, թրծված կամ ջնարակված ափսեների: Նրանք ստեղծում են հայկական տառատեսակների հատուկ ձևավորումներ, էջանշաններ, հայկական զարդանախշ բաժակներ, ծաղկամաններ; գդալներ և այլն: Շուտով կսկսեն աշխատել իսկական մագաղաթների վրա և միջնադարյան ձեռագրերի օրինակով գիրք-հուշանվերներ կպատրաստեն: Ուսումնարանը ավարտելուց հետո խմբի սաներն աշխատանքի են անցնում գիտահետազոտական ինստիտուտներում, կուլտուրայի պալատներում, գեղարվեստի կոմբինատներում, ղեկավարում են նկարչական խմբակներ և այլն:





Այս արվեստը կիրառական մեծ նշանակություն ունի: Խմբի վարպետ Լևոն Դիլանյանի ղեկավարությամբ սովորողները, օգտվելով ժողովրդական արվեստի ակունքներից, ստեղծում են ինքնատիպ ու գունագեղ խճանկարներ, զարդանախշում են հախճապակե սալիկներ, ափսեներ ու սափորներ: Խմբի սաների աշխատանքները ցուցադրվել են ինչպես մեզ մոտ, այնպես էլ արտասահմանում: Խմբի տարբեր տարիների բազմաթիվ շրջանավարտներ այսօր աշխատում են արտադրությունում:



# ԽԵՑԵԳՈՐԾՈՒԹՅՈՒՆ

— Մի օր գնացի ընկարիչ հորեղբորս արվեստանոցը, տեսնեմ ծաղկաման է պատրաստում՝ պատվեր էր ստացել։ Սկսեցի օգնել։ Զգացի, որ ոչ մի այլ աշխատանք ավելի հաճույքով չէի կատարել։ Հետո նկատեցի, որ թանգարաններում, հուշանըվերների խանութներում, գրեթե ամեն տեղ, առաջին բանը, որ ինձ գըրավում է՝ խեցեղեն առարկաներն են։ Հասկացա, որ սիրում եմ խեցեգործությունը, որոշեցի կատարելագործվել այդ արվեստի մեջ և ահա... սովորում եմ ուսումնարանի խեցեգործների խմբում, ուրախ եմ, որ մի երջանիկ պատահականության շնորհիվ ավելի շուտ կարողացա գտնել իմ մասնագիտությունը,— պատմում է Արամ Ղազարյանը՝ խեցեգործների խմբի լավագույն աշակերտներից մեկը։

Գեղարվեստի ուսումնարանի խեցեգործների արվեստանոցում մի փոքըր նեղվածք է։ Աշխատանքային սեղանների առաջ պատանիները և աղջիկները, լուրջ ու ներշնչված դեմքերով, ծաղկամաններ են պատրաստում։ Աշխատանքն այնքան հետաքրքիր է թվում, որ իմ մեջ առաջանում է թևերը քշտելու և որևէ բան պատրաստելու ցանկություն։ Բայց պարզվում է, որ այնքան էլ հեշտ չէ խեցեղեն այդ գեղեցկություններն ըստեղծելը։ Եթե քեզ հաջողվել է պատրաստել, ասենք, դեկորատիվ մի ծաղկաման, դա դեռ աշխատանքի կեսն է։ Հետո պետք է այդ ծաղկամանը պատկերազարդել կամ նախշազարդել, հետո՝ թրծել բարձր ջերմաստիճանի վառարանի մեջ, հետոներդաշնակ գույներով ջնարակել ու նորից թրծել, որ ջնարակված ծաղկամանը փայլի։ Վերջում ահա ստացվում է մի խեցեղեն նազանք, որի մեջ կա և՛ երաժշտություն, և՛ քանդակագործություն։ Մի խոսքով, ստեղծվել է կիրառական դեկորատիվ արվեստի մի գեղեցիկ նմուշ, որի պատանի հեղինակը եթե ուսումնարանի պատերից դուրս ցույց տար իր պատրաստածը և ասեր, թե հեղինակն ինքն է, պիտի կասկածեինք։

Գորգագործական խմբակի համբավը դուրս է եկել մեր հանրապետության սահմաններից: Խմբակի վարպետ Վալերյա Հովհաննիսյանի ղեկավարությամբ աղջիկները ստեղծում են գորգեր, կարպետներ, գոբելեններ՝ հավատարիմ մնալով հին հայկական գորգագործության ավանդույթներին, պահպանելով Շիրվանի, Ղարաբաղի, Սևանի, վիշապագորգի սկզբունքները:



Ոչ միայն երևանցիները, այլև Երևան ժամանած հյուրերը տեսնում են «Հաղթանակ» զբոսայգում վեր խոյացած «Մայր Հայաստան» կոթողը, որի հեղինակն է քանդակագործ Արա Հարությունյանը: Սակայն քչերը գիտեն, որ ուսումնարանի սովորողներն են գիպսե արձանը մաս առ մաս կրկնօրինակել մետաղի վրա և ապա այդ մասերը եռակցել իրար: Բայց դրվագողների խումբը միայն կրկնօրինակելով չի զբաղվում: Հմտանալով մասնագիտության մեջ՝ նրանք պղնձի կամ արույրի թիթեղներից ստեղծում են ինքնուրույն բարձրարժեք գործեր:



Ի անձին այս խմբակի, անհետացումից փրկվում է մեր ժողովրդական հինավուրց արվեստներից մեկը՝ ժանյակագործությունը Վանի, Սվազի, Մարաշի հռչակավոր կարատեսակներով: Խմբի ղեկավար Ռաիսա Բուղդատյանը ասում է, որ հայկական ժանյակն ունի ավելի քան հիսուն թեմա ու կարատեսակ, և այլ ժողովուրդների ժանյակագործությունից տարբերվում է նրանով, որ հասարակ ասեղով է կատարվում:



ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ



## ԱՐԵԳԱԿԸ

*ԱՐԱՄ ՀԱԿՈԲՅԱՆ*

Շողիկներ է շաղ տալիս
Արևն արտում ոսկեծուփ,
Որ իր շնչից ջերմանա
Ամեն ծաղիկ, ամեն թուփ:

Անծայր դաշտ ու ձորերին
Գույն-գույն շոր է պարգևում,
Տերևների, մրգերի,
Ջրերի մեջ փայլփլում:

Արևն այսպես ամեն օր
Քաղցր նիրհից արթնանում
Ու բովանդակ աշխարհին
Ժպիտներ է բաժանում...

## ԾԱՂԻԿՆ ՈՒ ՄԵՂՈՒՆ

*ԷԴՎԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

Կախարդական մի ծաղիկ
Թերթերով իր կապուտակ
Մեղվին այնպես էր փակել,
Որ դարձել էր մի վանդակ:

— Իմ նեկտարով մեզ համար
Մեղր քամիր, ժի՛ր մեղու,
Եվ կդառնանք քույր-եղբայր
Եվ կսիրենք իրարու:

Մենք երազում կթռչենք
Հազար սար ու հազար ծով,
Կհիանանք մեր տեսած
Կարմիր-կանաչ հեքիաթով:

Համոզում էր ծաղիկը,
Եվ խեղճ մեղուն իր մտքով
Թռած գնում անցնում էր
Կարմիր-կանաչ աշխարհով:

# ԳԱՅԼԻ ՎԱՐՁԸ

*ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՅԱՆ*

Տեր, տեր, իշատե՛ր...
Իշատերը գայլին թե՝
Տեսե՞լ ես իմ իշուկին,
Մեր տան սյունին, մշակին:

— Հա՛, մի ձոր՚կա, նա մեջն էր,
Չլինեի կկորչեր:

— Ա՛յ ապրես դու, բարեկա՛մ,
Դե էշս տո՛ւր, վարձդ տամ:

— Աղքատ մարդ ես, ամոթ չի՞,
Քեզնից վարձ չեմ պահանջի:
Արդեն որպես փրկագին
Կերել եմ քո իշուկին:



# ՄՈՍԿՎԱՅԻ

Դեռևս Մոնրեալում տեղի ունենալիք խաղերից առաջ՝ 1974 թվականի աշնանը, պիտի որոշվեր հաջորդ՝ 22-րդ օլիմպիադայի անցկացման վայրը: Օլիմպիադայի մայրաքաղաք դառնալու հայտ էին ներկայացրել աշխարհի շատ խոշոր քաղաքներ: Սակայն հիմնական մրցակիցները երկուսն էին. Մոսկվան և Լոս-Անջելոսը: Ավանդության համաձայն քաղաք-թեկնածուները ներկայացրին ցուցահանդես, որպեսզի ավելի ամրապնդեն իրենց իրավունքները: Լոս-Անջելոսի պատվիրակությունը շարունակ շեշտում էր իր այն առավելությունը, որ արդեն խաղերն անցկացնելու փորձ ունի (1932 թ.):

Սակայն «Մոսկվան հրավիրում է» ցուցահանդեսում Մոսկվայի մարզական կառույցների, ապագա օլիմպիական խաղահրապարակների, մարզադաշտերի, ջրավազանների ցուցանմուշները, մակետները, սովետական պատվիրակության ներկայացրած խաղերի պլանն ու անցկացման որոշակի սկզբունքները վճռական նշանակություն ունեցան: Մոսկվայի հնարավորություններն ու առավելությունները անվիճելի էին, և 1974 թվականի հոկտեմբերի 28-ին Միջազգային օլիմպիական կոմիտեի պրեզիդենտ լորդ Քիլանինը հայտարարեց քվեարկության արդյունքները՝ Մոսկվան հաղթող էր ճանաչվել և դարձել 22-րդ օլիմպիական խաղերի մայրաքաղաք: Եվ 1976 թվականի օգոստոսի երկուսին, երբ փակվեց 21-րդ օլիմպիականը Մոնրեալում, լուսատախտակի վրա պատկերվեց վաղորդյան Մոսկվան՝ Օլիմպիադա—80-ի մայրաքաղաքը: Երեքրոպեանոց ուղիղ հաղորդումից հետո նույն լուսատախտակի վրա գրվեց. «Մնաս բարով, Մոնրեալ: Մինչ հանդիպում Մոսկվայում»:

Յուրաքանչյուր օլիմպիադա ունենում է իր խորհրդանիշն ու թալիսմանը: 1975 թվականին օլիմպիական խաղերի կազմկոմիտեն հայտարարեց Օլիմպիադա—80-ի պաշտոնական խորհրդանիշի համամիութենական մրցույթ: Մրցույթի պայմանն էր՝ պահպանել օլիմպիական խաղերի հինգ տարագույն միահյուսված օղակների և խաղերի մայրաքաղաքի խորհրդանիշները:



Ինը հազար հեղինակ ներկայացրին ավելի քան 26 հազար նախագիծ: Այդքանից պետք է ընտրվեր մեկը: Մրցույթի բոլոր պայմաններին բավարարել էր Լատվիայի Ռեզեկնե քաղաքի երիտասարդ նկարիչ Վլադիմիր Արսենտևը:

Այդ խորհրդանիշին այժմ հանդիպում ենք օլիմպիական կառույցներում, խաղադաշտերում ու լողավազաններում, խանութներում ու զանազան էտիկետների վրա:

Օլիմպիական խաղերի խորհրդանիշից պակաս համբավ չի վայելում բարի Արջուկը՝ խաղերի թալիսմանը: Թալիսմանի համար արդեն բաց մըր-



# ՕԼԻՄՊԻԱԿԱՆ

ցություն էր հայտարարված: Հեռուստատեսությամբ հարցում էր արվել, թե ի՞նչը կարող է բնորոշ լինել մոսկովյան խաղերի համար: Հռոմինը՝ էգ գայլն էր, Մյունխենինը՝ գորշաշունը, Մոնրեալինը՝ կուղբը, իսկ Մոսկվայի համար հեռուստադիտողների մեծ մասը առաջարկեց՝ արջը: Ուրիշ ո՞ր կենդանին, եթե ոչ արջն է հեքիաթների, առակների, զրույցների ամենաբարի հերոսը: Իսկ ինչպիսի՞ն պետք է լինի այդ արջը...

Մրցույթին ներկայացված նկարներից լավագույնը նկարիչ Վիկտոր Ալեքսանդրովիչ Չիժիկովինն էր: Չիժիկովը մանկական շատ գրքեր է ձևավորել և նրա ամենասիրելին արջուկն է եղել: Բայց և այնպես նա շատ տարբերակներ էր նկարել, մինչև գտել էր լավագույնը: Եվ, իրոք, հինգ օղակներով գոտին կրող արջուկը, կամ ինչպես անվանում են՝ Միշկան, առաջին հայացքից շարժում է մարդու ժպիտը, այնքան բարեհոգի ու սիրելի է, իսկ գոտին նրան պարզապես տալիս է խրոխտ օլիմպիականի տեսք: Բարեհոգի, բայց և նկատելի արժանապատվությամբ լի արջուկ-թալիսմանը աշխարհի շատ մարզիկների երջանկություն և ուրախություն կպարգևի մոսկովյան օլիմպիադայում:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*



# Կորած գաղտնիքը

ԱՆԱՀԻՏ ՊԱՐՍԱՄՅԱՆ



Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Վարդուհին նայեց լուսամուտից դուրս. հատուկ մեքենաներով, որ մեծ աղմուկ էին բարձրացնում, կտրում էին խոտը և կտրված թարմ խոտը փայլում էր արևի տակ թավշի պես: Հետո նա տեսավ Հեղինեին, որ հատեց-անցավ փողոցը, մոտեցավ շքամուտքին: Նրա դեղին զգեստը զարմանալիորեն համընկնում էր խոտի աչք խտտացնող կանաչին, փողոցին, արևոտ օրվան: Հեղինեն գեղեցիկ էր՝ լայն ճակատի երկու կողմերից իջնող շագանակագույն

մազերի ալիքներով, դեմքի հիանալի գույնով, և աչքերի չարաճճի, փոքր-ինչ հեգնող արտահայտությամբ:

Քիչ անց նա արդեն Վարդուհու մոտ էր: Սկսեց ինչ-որ բան փնտրել պայուսակի մեջ, ասելով.

— Լսի՛ր, Վա՛րդ, պատկերացնո՞ւմ ես, եթե մոռացած լինե՞մ...

Բայց գտավ, չէր մոռացել: Նա անփույթ շարժումով ճակատից հրեց մազափունջն ու ասաց.

— Այդ Արշակը... ա՜խ, էնպե՜ս ծարավ եմ... Վարդո՛ւկ... մեր ջուրն էլի կտրվել էր...

Վարդուհին սառը ջուր բերեց, հետն էլ ելակ՝ կանաչ ու դեղին նկարազարդ ափսեի մեջ:

— Կե՛ր,—ասաց նա,—քիչ առաջ եմ սառնարանից հանել:

Հեղինեն խմեց ջուրը, հետո ծույլ-ծույլ հենված աթոռին, սկսեց ելակ ուտել:

— Ի՞նչ էր եղել, որ...—զգույշ հետաքրքրվեց Վարդուհին:

— Հա՛,— Հեղինեն իբրև թե մոռացել էր ու հիշեց.—Արշակը ինչ ասի որ լավ լինի... իբրև թե ես... իբրև թե ինքը... իբրև թե իր մտքում շարունակ ես եմ... պատկերացնո՞ւմ ես... կարծում է, չեմ հիշում, թե ոնց 7-րդ «Բ»-ի Անահիտի սովերն էր դարձել...

— Ե՞րբ ասաց քեզ Արշակը այդ...

Վարդուհու սիրտն սկսեց արագ-արագ բաբախել, նա այլայլվեց և հանկարծ լալու անզուսպ ցանկություն ըզգաց, հենց այնպես՝ ձայնը գլուխը գըցած, բարձրաձայն լալու:

Նա աշխատում էր զսպել իրեն, բայց միևնույնն է, երկու դավաճան արցունք դուրս ցայտեցին ու անշարժացան շիկնած այտերի վրա:

— Ի՞նչ պատահեց, Վարդո՛ւկ:

— Ոչինչ, — հազիվ արտաբերեց Վարդուհին ու փղձկաց:

Հեղինեն ապշել էր:

— Լսի՛ր,— հանկարծ դիմեց նա Վարդուհուն,— լսի՛ր, չլինի՞ թե Արշակի մասին ասածիս համար... հը՞ ... Վարդո՛ւկ...

Վարդուհին միայն վեր քաշեց քիթը, արցունքները նոր ուժով հորդեցին:

— Վարդո՛ւկ,— գլխի ընկավ Հեղինեն,—հասկացա՜... դու... Մի խոսքով, պարզ է...—նա քնքշորեն գրկեց Վարդուհուն,— Արշակը երևի լուրջ չասաց, հետո ես էլ պատմելիս մի քիչ...

Վարդուհին արցունքից կարմրած աչքերը հույսով հառեց նրան: Հետո վեր կացավ, գնաց լվացվելու:

Հեղինեն մտախոհ նայում էր լուսամուտից դուրս, ապա սկսեց թերթել տետրը: Նրա աչքերում զարմանք և տխրություն կար: «Այ քեզ բա՜ն,—մըտածում էր նա,— այդ ինչպե՞ս է լինում, որ մեկնումեկի այս կամ այն խոսքը կարևոր է դառնում քեզ համար...»

Նա ինչ-որ նոր, տարօրինակ մի զգացում ունեցավ Վարդուհու հանդեպ: Վարդուհին իր աչքում դարձավ ուրիշ, ավելի հետաքրքիր... և օտարոտի:

Վարդուհին երբ ներս մտավ, նոր լվացված դեմքին տրտում արտահայտություն, Հեղինեն ասաց.

— Անուկ Էմեին ես նմանվել, Վա՛րդ... հապա մազերդ հավաքիր:

Եվ ինքը երկու ձեռքով ծոծրակի վրա հավաքելով Վարդուհու մազերը, նայեց փոքր-ինչ հեռվից:

— Ըհը՜, ի՛սկը...— կարծես ինքն իր հետ խոսելով, շարունակեց նա,— աչքե՞րը հոնքե՞րը, հայա՜ցքը:

Իսկ Վարդուհին փորձում էր վերագտնել իրեն:

Ինչպե՜ս հիմարաբար մատնեց ինքն իրեն և կորցրեց իր թա՜նկ, թա՜նկ գաղտնիքը:



# ԵՐԵԽԱՆԵՐԻ ՍԻՐԵԼԻ ԲԱՐԵԿԱՄԸ

Սովետական Միության հերոս, գեներալ մայոր Ասքանազ Գևորգի Կարապետյանը այն բացառիկ մարդկանցից մեկն էր, որն իր մարտական ընկերների, աշխատավորության, երիտասարդների և պատանիների շրջապատում վայելում էր խորը հարգանք, սեր և մեծ հեղինակություն:

Վաղ հասակից բախտը նրան նետում է սովետական կարգերի համար կյանքի ու մահու պայքար մղողների առաջին շարքերը, նա զենքը ձեռքին Կարմիր բանակի շարքերում իր ներդրումն է կատարում 1920 թ. նոյեմբերյան օրերին:

1921—1925 թթ. Երևանում գործում էր Ալեքսանդր Մյասնիկյանի անվան հայկական ռազմական դպրոցը, որը կարմիր սպաներ էր պատրաստում մեր բանակի համար: Ա. Կարապետյանն այդ դպրոցի լավագույն դասատուներից մեկն էր:

Այնուհետև երկար ու ձիգ տարիների ծառայություն Կարմիր բանակի շարքերում: 1941 թ. Հայրենական մեծ պատերազմի առաջին իսկ օրերից մինչև վերջը հերոս հրամանատարը մաքառել է ֆաշիզմի հորդաների դեմ: Բրեստի ամրոցի մատույցներում և պատերի տակ, Ստալինգրադի պատմական ճակատամարտում, Հյուսիսային Դոնեցկի շրջանում, Մելիտոպոլի, Զապորոժիեի փողոցներում և այլուր, ամենուրեք դրսևորելով հմտություն, երկաթյա կամք, անհատական քաջություն:

Շատ հաճախ եմ հիշում իմ սիրելի հրամանատարին: Հետպատերազմյան տարիներին նա եղել է Թամանյան հայկական կարմրադրոշ դիվիզիայի հրամանատարը, իսկ ես նրա քաղաքական գծով տեղակալը, քաղբաժնի պետը: Բազում առիթներով, դաշտային պարապմունքների, զորաշարժերի ժամանակ շատ ենք գիշերներ լուսացրել միասին:

Օրերից մի օր, ձմռանը, մենք լեռներում կեսգիշերին տաքանում էինք խարույկի շուրջը:—«Մի լավ բան պատմիր, ընկեր գեներալ»,—խնդրեցի ես, և նա պատմեց ահա թե ինչ.

«1943 թ. կատաղի մարտերով մոտեցանք Ուկրաինայի Սինելնիկով քաղաքի մատույցներին, բայց թշնամու ուժեղ կազմակերպված կրակը և ամուր պաշտպանությունը թույլ չտվեց, որ իմ մարտիկները գրոհով վերցնեն քաղաքը: Անցա պաշտպանության և ռադիոկապով զեկուցեցի բանակի հրամանատարին, խնդրելով նոր համալրում: Իսկ նա, չունենալով դրա հնարավորությունը, պատասխանեց, թե՝ ընկ. Կարա-

պետյան, Ձեզանից չէի սպասում նման բան, ես արդեն զեկուցել եմ Գերագույն գլխ. հրամանատար Ստալինին, որ Սինելնիկովն ազատագրված է և հայ ժողովրդի հերոս զավակ Ա. Կարապետյանն այնտեղ է, քաղաքում: Ինձ մնում էր,— ծիծաղելով պատմում է գեներալը,—արագորեն հրավիրել զորամասերի հրամանատարներին, քաղ. աշխատողներին, կարդալ բանակի հրամանատարի հեռագիրը, որից հետո հանուն մեր գվարդիական դիվիզիայի պատվի, հանուն հայրենիքի, վերջին ուժերը ժողովելով, գրոհեցինք ֆաշիստական բանդաների դեմ և ազատագրեցինք Սինելնիկովը»:

Լինելով հզոր սովետական պետության զինված ուժերի փառապանծ գեներալներից մեկը, Աւքանազ Կարապետյանը միաժամանակ իր հայ ժողովրդի սիրելի զավակն էր:

Ես ականատես եմ եղել բազմաթիվ դեպքերի, երբ Սովետական Միության ամենատարբեր վայրերից նրա նախկին մարտական ընկերները իրենց ընտանիքներով ժամանել են Երևան՝ իրենց սիրելի գեներալի հետ տեսակցելու: Նաև տասնյակ քաղաքներից որպես իրենց ազատարարներից մեկի, նրան հյուր էին հրավիրում իրենց մոտ: Նա մի շարք քաղաքների պատվավոր քաղաքացի էր, «պատվավոր հանքագործ» և այլն:

Այն ժամանակից ի վեր, երբ Աւքանազ Կարապետյանը հանգստի էր անցել, պիոներական պալատի մշտական հյուրն ու երեխաների ջերմ բարեկամն էր: Շատ էր սիրում պիոներներին, պատմում էր նրանց մեր բանակի հերոսական անցյալի մասին, սերմանելով նրանց սրտերում քաջություն, աշխատասիրություն և նվիրվածություն հայրենիքին:

*ԱՇՈՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*
*պատմագիտության դոկտոր, պրոֆեսոր*

**ՕԼԻՄՊԻԱԴԱ-80**





Բռնցքամարտը առաջ է եկել Եգիպտոսում ու Բաբելոնում դեռևս 5 հազար տարի առաջ, ըսպորտային մենամարտի ձև հանդիսացող կռփամարտից: Կռփամարտը մտնում էր հին Հունաստանում անցկացվող օլիմպիական խաղերի ծրագրի մեջ: Առաջին անգամ բռնցքամարտի (առանց ձեռնոցների) կանոնները հայտնվեցին XVIII դարի սկզբին Անգլիայում: Այնտեղ էլ 1867 թվականին հաստատվեցին ձեռնոցներով բռնցքամարտի առաջին կանոնները: 1904 թվականից սկսած, բռնցքամարտը մտնում է ժամանակակից օլիմպիական խաղերի ծրագրի մեջ:



Պիեռ Քուբերտենի դերը օլիմպիական խաղերի վերածննության գործում հանրահայտ է: Բայց բոլորը չգիտեն, որ ժամանակակից օլիմպիադաների հիմնադիրը նաև բազմակողմանի մարզիկ է եղել: Ճիշտ է, օլիմպիական խաղերին նա չի մասնակցել, սակայն մարզական վարժություններին նա շատ ժամանակ էր հատկացնում: Իսկ մի անգամ գրազով նա ութ ժամ շարունակ հեծանիվ ու մրցավազքային մոտոցիկլ քշեց, ձի վարեց, սուսերամարտեց, բռնցքամարտեց, թենիս խաղաց և հաղթեց այդ անսովոր մրցապայքարում:

# Ճայերը

ՌՈՒԲԵՆ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Վաղ առավոտյան, երբ դեռ քնած էր երամը, իսկ խարիսխը բարձրացրած ձկնորսանավը լճի կենտրոն էր շտապում, Առաջնորդը կտուցով կըսմըթեց որդու փափուկ թևատակը:

— Ե՛լ,— շշնջաց նա,— ե՛լ, ճո՜ւտս: Հասել է քեզ երկինքը ցույց տալու ժամը: Եվ զգույշ, որ չարթնացնես մորդ: Նրան թե թողնես, քեզ կկապի իր ոտքից ու բաց չի թողնի: Ե՛լ, դու արդեն մեծ ճայ ես:

Մինչև բնից դուրս գալն էր դըժվար,— ճտին թվում էր, թե իրեն ուժով սառը ջուրն են խցկում,— դրսում քունը փախավ, տաքուկ ծուլությանը փոխարինելու եկավ մկաններն լարումը պարպելու անզուսպ մի ցանկություն: Նա ուզում էր փշրել ոտքի տակ ընկնող մանր քարերը, եղեգներ էր կտցահարում, թփուտներ, ցատկում էր փոսերի վրայով, մեծ բավականությամբ բարձր թմբերն էր մագլցում՝ ծիծաղելով հոր երկար շրջանցումների վրա:

«Նա վստահ է քայլում,— հիանում էր հայրը:— Մնում է, որ նույն վստահությամբ էլ թռչել կարողանա»:

Նրանք հասան հարթ լճափ, որտեղից իր առաջին թռիչքն էր սկսել Առաջնորդը, որտեղից թռել էին Երամի համարյա բոլոր ճայերը:

— Այսօրվանից, ճո՛ւտս,— հանդիսավորությամբ խոսեց Առաջնորդը,— դու վայելելու ես աշխարհի ամենամեծ հաճույքը՝ թռիչքը:— Սրանք Ուսուցչի խոսքերն էին, որ արտասանվում էին ամեն նորելուկի առաջ ու թեև Առաջնորդը դեռ բարկացած էր ծեր իմաստունի վրա, բայց և չէր կարող չկրկնել նրան:— Թռչել երազում են բոլոր արարածները, սողունները, չորքոտանիները, մարդիկ, բայց թռչում են միայն թևավորները: Դո՛ւ թևավոր ես: Դո՛ւ ճայ ես: Դո՛ւ պիտի թռչես:

Սկզբում նա որդուն ստիպեց կտըրվել գետնից արագ վազքից հետո: Ինչպես և սպասում էր, ճուտն այս վարժությունը հեշտությամբ հաղթահարեց: Դժվարն առանց քայլ գցելու, նստած տեղից բարձրանալն էր, ճտի թևերը միաժամանակ չէին բացվում, դրանից էլ նա շրջվում էր, ընկնում ուշացող թևի կողմը, կտուցը խրում ավազների մեջ: Առաջնորդին դուր էր գալիս որդու համառությունը: Չորսհինգ փորձից հետո ճուտը վերջապես կտրվեց գետնից, մի պահ միայն անշարժացավ օդում և ցած ընկավ, ո-

Սկիզբը՝ № 4-ում:

րովհետև դեռ չգիտեր, որ վայրէջքը նույնպես թռիչք է:

— Ես երևի թույլ եմ, հա՞, հայրի՛կ,— հարցրեց ճուտը՝ խոստովանելով թևերի հոգնությունը:

— Քո ուժը բավական է լճի վրա մի ամբողջ պտույտ կատարելու համար,— ասաց Առաջնորդը:—Սակայն դու քո այդ հսկայական ուժը ծախսում ես երկու-երեք թափահարման վրա: Անվերջ, երկար թռչելու համար հարկավոր է պահպանել ուժը: Կատարյալ թռիչքի բոլոր կետերում թռչողի ուժը նույնը պիտի լինի:

Երկրորդ անգամ ճուտն ավելի թեթև պոկվեց գետնից և ավելի վեր ելավ, բայց այս անգամ էլ կորցրեց կառավարումը, որովհետև հոր տված դասերը մոռացած, հիանում էր իր բարձր ցատկով: Առաջին անգամ էր այդքան բարձրից տեսնում լիճը, հոբը, եղեգները, ձկնորսանավը, ամեն-ամեն ինչը, որ հասցրել էր ճանաչել ծնված օրվանից: Անկումն էլ համեմատաբար փափուկ ստացվեց, ընկնելիս հասցրեց սթափվել ու թափահարում էր թևերը:

— Հրաշալի է,— ուշք չդարձնելով որդու տնքոցներին, քչչալերեց Առաջնորդը:— Քո հաջողություններն ինձ հիացնում են:

Հոր շոյիչ խոսքերը ասես դուրս քաշեցին ճտի դաղված ոտքերից ցավը, թևերի թմրությունը: Ամբողջ ուժով նա ներքև հրեց հողը, ծափ զարկեց թևերով և այս անգամ, իրոք, հիացրեց Առաջնորդին: Բայց և վախ ընկավ հոր սիրտը: Նա շտապով թռավ, հավասարվեց որդուն և փոքր-ինչ ցածրից էր թռչում, որ եթե ճուտը հանկարծ ընկնի, կարողանա տակը մտնելով թուլացնել անկման արագությունը:

— Թռչո՜ւմ եմ,— ճչում էր ճուտը,— թռչո՜ւմ եմ...

Երկինքն արդեն լուսավորվել էր, լիճը շրջապատող լեռները կարծես վեր էին խոյանում ջրից և գլխիվայր կրկին լիճը սուզվում: Թռչելն ավելի հեշտ էր լուսավոր երկնքում. ամեն ինչ նկատելի էր, չկար անհայտության ճնշող զգացումը:

— Ծրջվենք,— հրահանգեց Առաջնորդը:—Դանդաղ, լայն պտույտով:

— Մի քիչ էլ, հայրի՛կ,— խնդրեց ճուտը:— Ես ուզում եմ հասնել ձկնորսանավին: Ուզում եմ ափից ափ տեսնել մեր լիճը: Ի՜նչ գեղեցիկ լիճ է, հայրիկ: Ես չգիտեի, որ նա այսքան մեծ է ու այսքան գեղեցիկ...

Ներքևում լիճն էր, մինչև կղզյակ ճուտը պիտի թռչեր այնքան, որքան թռել էր արդեն: Ուժը կբավականացնե՞ր: Եվ էլի ուժ էր պետք պահել վայրէջքի համար:

— Ծրջվի՛ր,— կրկնեց Առաջնորդը:—Չշտապես: Դու դեռ կսովորես շրջադարձեր կատարել, ցած նետվել քարի պես, անշարժ պառկել ամպերի վրա, իսկ այժմ հարկավոր է ետ դառնալ, քանի չի արթնացել մայրդ:

Նրա փորձված աչքը նկատել էր ճտի թևերի անհամաչափ թափահարումը: Լայնադեղ ստացվեց սկսած պտույտը, կղզյակը ավելի հեռացավ, մեծացնելով Առաջնորդի վախը: Եթե ճուտը ջուրն ընկներ՝ կխեղդվեր անպայման, լավ է ընկնի հողին՝ կոտրի թևը, քան խեղդվի ջրում:

— Հանգի՛ստ, առանց խուճապի,— սարսափին չենթարկվելով հրամայեց Առաջնորդը:— Դու պետք է հասնես կղզյակին, որովհետև դա է միակ ելքը:

Մինչև շրջվելը ճուտը հոգնություն չէր զգում, թևերը նվալ սկսեցին, երբ ավարտվեց շրջադարձը, երբ կապույտ անհունի մեջ կղզյակը երևաց որպես անհետացող կետ: Լարվածությունից նա ձգել էր վիզը, գլուխը ցցել վեր, կարծես կտուցով ուզում էր կառչել օդից: Նա զգում էր, իսկ հայրը տեսնում, որ դժվարանց յուրաքանչյուր մետրը ուղեկցվում է բարձրության կորուստով:

— Դու պահի՛ր հավասարակշռությունդ,— վերջին միջոցին դիմեց Առաջնորդը,— իսկ ես քեզ կհիշեմ...

Կղզյակի ու լճի թաց սահմանագիծն էր փրկության այն կետը, դեպի ուր հասնելու համար, հոր հրահանգով, ճուտը վատնեց վերջին ուժերը: Եվ երբ ներքևում ավազները հայտնվեցին, նա վայր ընկավ: Քարի պես: Մի ակընթարթում: Եվ հայրն անզոր էր կասեցնելու նրա անկումը:

Նախաճաշից հետո ճայերը սովորություն էին դարձրել Կապույտ ժայռի կատարից դիտել ճտերի օդային վարժանքը: Մինչև աշուն օրեր հաշվող երամին ուտելիքից ու ճտերի մեծանալուց բացի այլև ոչինչ չէր հետաքրքրում, ո՛չ թռչում էին, ո՛չ ճռճռում քամու թևին ընկած, ո՛չ ձուկ էին որսում և ո՛չ էլ նորոգում փոթորկից ու տեղատարափ անձրևից քանդված բները: Կղզյակն արդեն լքված գաղութի տեսք ուներ, իսկ Երամն՝ անբան ծերակույտի, որի զրույցներն ապագայի շուրջ, ոչընչով չէին տարբերվում անցյալը քրքրող անհեթեթ շաղակրատանքից:

— Ճարպիկ, ուժեղ ճտեր են անել,— ասում էին նրանք՝ հայացքները երկնքից չկտրելով: — Սրանց հետ մենք կգրավենք աշխարհի ամենալայն ծովը:

Ճտերն իսկապես հրաշալի էին թռչում: Յուրաքանչյուրը կարողանում էր անել այն ամենը, ինչ Առաջնորդն էր անում, որովհետև Ուսուցիչը նրանցից չէր ընտրել առաջնորդացու: «Բոլորդ էլ առաջնորդացու եք,—ասել էր նա առաջին թռիչքի օրը:—Եվ ձեզանից նա կդառնա իսկական Առաջնորդ, ով առավել կխորացնի միտքը, առավել կսրի զգացմունքները: Թռիչքը մեր կյանքն է: Իսկ կյանքը իմաստ պետք է ունենա»: Օդում ճտերին ազատություն տալով, Ուսուցիչը հաճախ էր իջնում լճափ՝ հանգստանալու և զրուցելու Առաջնորդի՝ կոտրած թևով որդու հետ: Ընկած ճտին կրկին թռցնելու մեկ-երկու ապարդյուն փորձից հետո Առաջնորդը ձեռք էր քաշել նրանից, վճռելով աշնանը թողնել նրան կղզյակում: Վերքն, իհարկե, ապաքինվել էր, թևը նախկին շարժունակությունն էր ձեռք բերել, բայց չէր անցել ցավի հիշողությունը թարմ պահող անկման սարսափը: Մահվան դատապարտված ճուտը հաշտվել էր վիճակի հետ,— հո չէ՞ր կարող պահանջել, որ Երամն իր պատճառով մնար մեռնող լճում: «Եթե ինձ չուտեն ագռավները,— մտածում էր նա,— ես կմեռնեմ լճի հետ»:

Ծեր Ուսուցչին ավելի շատ Առաջնորդի ճտի մտավոր աճն էր հիացնում, քան մնացածների ազատ ճախրանքը և բոլորովին չէր զարմանում, որ թռչող ճտերն, իրենցից անկախ, ոչ թե ծնողներին, Առաջնորդին, իրեն, այլ ամբողջ օրը լճափում քայլող հենց այս խեղանդամին էին հնազանդվում: Նա առաջինը նորոգեց քանդված բույնը,— նրա օրինակը վարակեց հասակակիցներին, նրա խորհրդով ճտերը հեռացրեցին ալիքների ափ շպրտած աղբը, երամի խրախճանքների մնացորդները, որ գարշահոտություն էին տարածում չորսդին: Առաջնորդի ճտի համար նրանք լեռնային գետակներից կարմրախայտ էին բերում, դաշտերից՝ ծաղիկների սերմեր, նկարագրում էին այն մեծ վայելքը, որ ապրում է ճայը բարձրությունից աշխարհին նայելիս: Կղզյակը շատ շուտով ծածկվեց ծաղիկներով: Դրանց հոտի վրա թռան-եկան չալպուտուրիկ հազարավոր թիթեռներ:

— Ուսուցի՛չ,— մի օր ասաց ճուտը և նրա աչքերը լցվեցին արտասուքով,— գուցե չհավատաք, կարծեք վիճակս է ստիպում կեղծել, բայց ազնիվ խոսք, ես զգում եմ, որ առողջ թևով էլ չէի հեռանա Երամի հետ, կմնայի այստեղ, մեր լճում:

Նա սիրում էր լիճը, կղզյակը, Կա-

պույտ ժայռը, լիճը շրջափակող լեռները, երկինքը—այն ամենը, ինչը մնալու էր իր հետ, ինչը նա իրենն էր համարում:

— Ես քեզ հավատում եմ,— հուզվեց Ուսուցիչը,— որովհետև նման վճիռ իմ մեջ ծնվել է քո ծնունդից էլ առաջ:

Կապույտ ժայռի տակ կայացած հավաքի օրն էր Ուսուցիչը որոշել չհեռանալ երամի հետ և հիմա, ինքն իրեն էլ չխոստովանելով, նա ուրախ էր, որ ընկեր էր գտել: Քանի ուժ կա թևերում, կկերակրի ճտին, իսկ երբ տկարանա, աստված նրա հետ. մահվան դատապարտվածի համար մի՞թե մեծ պարգև չի թեկուզ մեկ օրվա կյանքը:

— Մենք հրաշալի կապրենք,— ասաց Ուսուցիչը:— Առավոտներն ամբողջ օրվա համար ձկնորսներից ձուկ կբերեմ, քաղցած չենք մնա, մնացած ժամերին, փոքրիկ թռիչքներով կփորձենք սրտից հանել անկման սարսափը: Դու դեռ կթռչես: Ես համոզված եմ: Եվ քո թռիչքը ամենակատարյալն է լինելու: Որովհետև դու սիրել գիտես:

Լճափը գոլորշի էր արտաշնչում, ավազների խոնավությունը ցնդում էր, որպեսզի հստակեցներ ջրի ու ցամաքի ոլորուն սահմանագիծը, որ կայուն էր պահի մեջ, օրվա մեջ, բայց ոչ երբեք ամիսների, տարիների: Դեռևս չձևավորված իր միտքն արտահայտելուց անհարմար զգալով՝ ճուտը հերթական ալիքից ջուր կտցեց և մի վերջին անգամ համոզվեց, որ չի նկատվում լճի նահանջը: Նշանակում է լիճը կաթիլ առ կաթիլ է ցամաքում: Նահանջը նկատվում էր օրեր, ամիսներ անց միայն, երբ կաթիլների գումարը վերածվում էր ահռելի քանակության: Ձնչին թվացող կաթիլն է սկիզբը: Ծովը, ուրեմն, կաթիլներից է կազմված:

Ճուտը շնչահեղձ էր լինում հուզմունքից, գլխում պտտվող դատողու-



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ

թյունների արագությունից, ինչը կարծես հաղորդվել էր և մարմնին, թևերին: Նա շոշափելու չափ հստակ զգում էր կաթիլի և՛ ուժը, և՛ իրեն էլ մի կաթիլ էր համարում: «Ծովը կաթիլներից է կազմված,— ինքնամոռաց կրկնում էր նա:— Ծովը կաթիլներից է կազմված»:

Նա վախ չուներ այլևս: Ո՛չ բարձրությունից, ո՛չ անկումից: Նա գտել էր թռիչքի իմաստը: Նա պիտի թռչեր: Եվ թռավ: Եվ ծեր Ուսուցիչը օրհնում էր նրա կատարյալ թռիչքը:

Կտուցները վեր տնկած ճայերը նայում էին աշնան քամուց բզկտվող սևսև ամպերին, սարսռում էին ուժգնացող ցրտից և չարանում ուշացող ճըտերի վրա:

— Ահա ուսուցչի նորագույն դաստիարակության արդյունքը,—փնթփընթում էին նրանք:—Ճիշտ է, մեզանից վատ չեն թռչում, բայց Երամը երամ է կարգապահությամբ: Նրանք, ի՞նչ է, չգիտեի՞ն, որ այսօր է տրված հեռանալու հրամանը:

Երամից քիչ հեռու, մի բարձր թմբի կանգնած Ուսուցիչն Առաջնորդին երկրի երես դուրս ելած մայր ապառ էր թվում, որին կարելի էր փշրել, բայց պոկել երբեք:

— Ո՞րտեղ են նրանք,— մոլտաց Առաջնորդը:— Ո՞ւր ես ուղարկել նըրանց:

Ճայերը սեղմ օղակի մեջ առած Ուսուցչին, սպասում էին Առաջնորդի մի հատիկ խոսքին, որ վրա պրծնեն, գզգզեն իրենց ճտերին թաքցրած ծերին:

— Դու մնում ես՝ մնա՛,— ծղրտում էին ճայերը,— սատանան քեզ հետ, իսկ մեր ճտերին վերադարձրո՛ւ:

Ուսուցիչը լռում էր: Նա նույնիսկ չշրջվեց դեպի ցեղակիցները, որովհետև արդեն նկատել էր լեռներից եկող ճտերի երամը: Բզկտված ամպերը ճեղքող, քամու հետ օդում վերուվար անող ճտերը աներևակայելի արագությամբ դեպի լիճն էին սուրում, ասես կղզյակի գլխավերևում սև ագռավներ էին հայտնվել— շտապում էին կենաց ու մահու մարտի: Առաջնորդը հիացած էր նրանց թռիչքով, նաև տարակուսած՝ մի՞թե հնարավոր է նման կատարյալ թռիչք՝ առանց Առաջնորդի: Իր ճուտն էլ նրանց հետ էր:

— Նրանց առաջնորդում է Սերը,— կարծես կարդալով Առաջնորդի միտքը, ասաց Ուսուցիչը:

Ճտերը մի պահ միայն կանգ առան լճի կենտրոնի վերևում, կտուց բացելու չափ մի աննշան պահ, հետո կըտրուկ շրջադարձով կրկին թռան դեպի լեռները, ուր սառնորակ աղբյուրները իրար միանալով դառնում էին դաշտ վազող գետակներ: Ապշանքից քարացած Երամը սակայն ճտերի թռիչքին չէր հետևում, կատարվածի ողջ իմաստը դեռ չըմբռնած ճայերին ցնցել էր այն մեծ, շողշողուն ծիածանը, որ ծընվել էր ճտերի կտուցներից ընկած ջըրակաթիլների և արեգակի շողերի գրկախառնումից: Նման ծիածան նըրանք չէին տեսել, նույնիսկ, հեռավոր ծովերին հասած իրենց երազներում:



# ՄԱՐԴԻԿ, ՑԵՂԵՐ, ԲԱՐՔԵՐ

Երկրագնդի վրա այսօր էլ ապրում են ցեղեր, որոնք շատ հեռու են 20-րդ դարին բնորոշ քաղաքակրթությունից: Էլ չենք ասում, որ երկրագնդի տարբեր մասերում հայտնաբերվում են փոքրաթիվ ցեղախմբեր, որոնք իրենց զարգացմամբ դեռ չեն ավարտել քարե դարի շրջանը: Ստորև տպագրվող փոքրիկ հոդվածները պատմում են տարբեր ցեղերի կենցաղի ու սովորությունների մասին:



## ՈՏՆԱՑՈՒՊԵՐ՝ ՆԱՎԱԿԻ ՓՈԽԱՐԵՆ

Ֆիլիպինյան արշիպելագի հարավում ապրում է մոտ 85 հազար մարդուց բաղկացած բաջու ցեղը: Նրանք ծովային երկար ճանապարհորդություններ են կատարում, երբեմն հասնելով մինչև Ինդոնեզիա: Նրանց տները կանգնած են ցցերի վրա, իրենք էլ տնից դուրս գալիս, օգտվում են ոտնացուպերից: Ոտնացուպերով քայլելը ոչ սպորտ է, ոչ էլ՝ զվարճություն: Եթե նավակ չունես, ստիպված ես օգտվել ոտնացուպերից, որը այստեղ հաղորդակցվելու միակ միջոցն է:

## ՀԱՂԹԱՆԱԿԻ ԽՈՐՀՐԴԱՆԻՇԸ

Ամեն տարի դեկտեմբերին պերուական Անդերում տեղացիները բարձրանում են լեռները անգղներ որսալու: Դա արվում է արյան տոնի՝ Յավարի տոնակատարության համար: Անգղին կապում են եզան մեջքին և քշում գյուղի հրապարակով: Այնուհետև անգղին ազատ են արձակում և նա թռչում է: Դա խորհրդանշում է հնդկացիների ոգու հաղթանակը իսպանացի նվաճողների դեմ: Նույնանման ծիսակատարություններ են տեղի ունենում նաև երկրի այլ շրջաններում: Որոշ տեղերում հեծյալները փորձում են ազատ արձակել բարձր սյունից կախված անգղին:



## ՄԱՐԱԹՈՆՅԱՆ ԳՆԴԱԿԱԽԱՂ

Տարաումարա հնդկացիները, խուսափելով իսպանական ստրկությունից, հարյուրավոր տարիներ ի վեր հաստատվել են Մեքսիկայում: Թվով մոտ 40 հազար մարդ, նրանք ապրում են լեռնային անմատչելի գյուղերում: Տարաումարաները հայտնի են իրենց արտակարգ տոկունությամբ: Նրանց նախընտրած սպորտաձևը գնդակախաղն է: Բաժանվելով երկու թիմի, բոբիկ տարաումարաները ոտքի հարվածներով վարում են փայտե թեթև գնդակը: Հաղթում է այն թիմը, որը իր գնդակն առաջինն է հասցնում նշված տեղը: Կարճատև մրցամարտը տևում է արևածագից մինչև արևամուտ, իսկ երկարը՝ 24—48 ժամ: Մրցությանը հետևողները գիշերը ջահերով լուսավորում են ճանապարհը, որպեսզի նրանք չկորցնեն գնդակը:

## ՄԱՐԴԻԿ՝ ՔԱՐԵ ԴԱՐԻՑ

Անդրամազոնյան ավտոճանապարհի բացումը հնարավորություն ստեղծեց շփվելու նորահայտ մարդկային ցեղախմբերի հետ, որոնք դեռևս գտնվում են զարգացման քարե դարի ժամանակաշրջանում: Ենթադրվում էր, որ ջունգլիների թաքստոցներում ապրում են «հսկա» հնդկացիներ՝ վտանգավոր և քինախնդիր, բայց հետազոտողները հանդիպեցին բարեհամբույր մարդկանց, որոնք ուտելիք և ջուր մատուցեցին նորեկներին և, բարեկամական զգացմունքներից ելնելով, նույնիսկ թույլ տվեցին, որ սպիտակ «ներխուժողները» իրենց հակահամաճարակային ցավոտ պատվաստումներ կատարեն: Տքսուքահամեյ ցեղախմբի այս երիտասարդ որսորդներին հաջողվել է մի անակոնդա որսալ, հաջողություն, որը մեծ տոնախմբությամբ նշվելու է ամբողջ համայնքի կողմից:

## Ի ՊԱՏԻՎ ԿՈՒԿԻ







1774 թ., երբ Ջեյմս Կուկը հայտնագործեց Նոր Հիբրիդներ արշիպելագի Տաննա կղզին, նրա կարգադրությամբ աշխատանքի գործիքներ և սնունդ բաժանեցին տեղի բնակիչներին: Այդ դեպքի հիշատակը սերնդեսերունդ է անցել, և այսօր էլ Տաննա կղզում ավանդական ծեսեր են կատարվում, որոնցից գլխավորը «Նեքոույարն» է: Այս տոնակատարության հրավիրվածները մեկական գոճի են նվեր ստանում, ինչպես նավապետ Կուկի ժամանակ:



# «ՀԱՑԻ ՏՈՆ»

Ազորյան կղզիների բնակիչների համար ամենանվիրական տոնը «Հացի» օրն է: Դարեր շարունակ սով և աղքատություն ճաշակած ժողովուրդը տարին մեկ անգամ, զուգված-զարդարված փողոցներն է թափվում: Այդ հանդիսության ժամանակ սայլի անիվի չափ հսկա բլիթներ են բաժանում բոլոր բնակիչներին, որպեսզի բոլորը հաց ունենան և ոչ ոք այլևս չիմանա, թե ինչ բան է սովը:

*Ռումիներենից թարգմանեց՝ Տ. ԴԱՐԲԻՆՅԱՆԸ*



# ԼԵՎ ԼԱՆԴԱՈՒ

Լանդաուն դիֆերենցել սովորեց տասներկու, իսկ ինտեգրել՝ տասներեք տարեկանում: Չէր ուզում պարապել միայն երկրաչափություն. շատ էր պարզունակ: Քննության նախօրյակին, բազկաթոռի մեջ նստած, ոտքը ոտքին երկու ժամ տարված խորասուզվեց դասագրքի մեջ և քննությունը հանձնեց գերազանց:

●

Թուլակազմ տղան առաջին իսկ օրից դարձավ տարիքով իրենից մեծ համադասարանցիների ծիծաղի ու կատակների առարկան: Բայց դա տևեց մինչև մաթեմատիկայի առաջին դասը: Առաջարկված խնդիրը պետք էր լուծել երկու եղանակով. աշակերտները հակվեցին տետրերին:

— Իսկ դու չե՞ս էլ փորձում լուծել,—հարցրեց դասատուն:

Դասարանը հռհռաց:

— Ես արդեն լուծել եմ:

— Եվ ո՞րն է պատասխանը:

Պատասխանը ճիշտ էր:

— Իսկ հիմա լուծիր երկրորդ եղանակով:

— Լուծել եմ:

— Մոտեցիր գրատախտակին:

Եվ կայացավ ծանոթությունը:

●

Ուսումնարանի պատմությունը կրկնվեց Բաքվի համալսարանում. մի ամբողջ կիսամյակ: Ուսանողների համար նա մի տարօրինակ երեխա էր՝ չգիտես ինչպես հայտնված իրենց մեջ: Մինչև որ մի անգամ Լևը հարց տվեց դասախոսին: Պրոֆեսորը երկար մտածեց: Լսարանում քար լռություն էր: Պրոֆեսորը նրան հրավիրեց գրատախտակի մոտ, և նրա սև մակերեսն արագորեն ծածկվեց մաթեմատիկական նշաններով: «Չինական այբուբեն»,—շշնջաց մեկը: Պրոֆեսորն ու Լանդաուն սկսեցին վիճել: Ուսանողներն զգում էին, որ Լանդաուն ավելի ճիշտ է մտածում: Լևի դեմքը լուրջ էր ու կենտրոնացած, պրոֆեսորը հուզված էր երևում և մի քիչ վհատ: Վերջապես պրոֆեսորը ժպտաց և, խոնարհելով գլուխը, ասաց.

— Շնորհավորում եմ, երիտասա՛րդ... Դուք գտել եք լուծման յուրօրինակ եղանակ:

●

Համակուրսեցիներից մեկը կրճատեց Լևի ազգանունը և նրան անվանեց՝ Դաու: Ամենքին շատ դուր եկավ կարճ ու հնչեղ անունը: Հետագայում նրան այդպես էին անվանում աշխարհի բոլոր ֆիզիկոսները, նույնիսկ իր ուսանողները:

## Լանդաուի մտքերից

◆ — Կարելի է զանազան բնագավառներում աշխատել և շատ լավ մասնագետ լինել, բայց առանձնապես չսիրել այդ մասնագիտությունը: Բայց հազիվ թե լավ գիտնական կամ արվեստագետ դառնաս, եթե դրանք չկան քո հոգում:

◆ — Ինչքան պարզ՝ այնքան լավ: Միշտ պետք է ձգտել պարզության: Հետազոտողը




●

Լենինգրադում էր ուսանում և Լանդաուի քույրը՝ Սոնյան։ Եվ ահա զավակներին այցելության եկավ նրանց մայրը՝ Լյուբով Վենիամինովնան։ Դստեր մոտ ամեն ինչ բարեհաջող էր, իսկ Լյովան շատ անհանգստացրեց մորը. որդին պարապում էր ցնորվելու աստիճան, գիշեր-ցերեկ գլուխը չէր բարձրացնում բանաձևերից։ Արդեն Բաքվում նրանց ազգականուհի Սոֆյա Զարիֆյանը, ցանկանալով փարատել մոր անհանգստությունը, ասաց.

— Լյուբով Վենիամինովնա, Լյովան հանճար է։

— Ես կգերադասեի ոչ թե հանճար, այլ որդի ունենալ,— առարկեց տիկին Լանդաուն։

●

Լանդաուին առաջարկեցին զբաղեցնել Խարկովի տեսական ֆիզիկայի ամբիոնը։ Դա 1932-ին էր։ Իսկ արդեն 1934-ին՝ առանց դիսերտացիայի պաշտպանության, նրան շնորհվեց ֆիսիկամաթեմատիկական գիտությունների դոկտորի աստիճան, մեկ տարի անց՝ պրոֆեսորի կոչում։ Այդ ժամանակ նա 26 տարեկան էր։ Շուտով Խարկովը դարձավ ֆիզիկայի աչքի ընկնող կենտրոն։

●

Դաուն սեմինարի ոգին էր։ Նրա հետ շրջվելը ազնվացնում էր. ստիպում լինել պահանջկոտ։

— Եթե դադարեք աշխատելուց՝ ձեզ վրա պոչ կբուսնի, և դուք կկսեք ծառերը մագլցել,— մի անգամ ասաց Դաուն ծուլացող ասպիրանտին։

Զախորդ տղան ստիպված էր խելքը գլուխը ժողովել։

●

1962 թ. հունվարին տեղի ունեցավ մեծ աղետ։ Լանդաուն ավտովթարից գրեթե ամբողջովին ջախջախվեց։ Նրան արագ հասցրին հիվանդանոց։ Հիվանդի մոտից օր ու գիշեր չէր հեռանում նեյրովիրաբույժ Ֆեոդորովը, որի մասին ասում էին, թե մարդկանց ետ է բերում այն աշխարհից։ Աղետից հինգ օր հետո Լանդաուն գրեթե դադարեց շնչել։ Մի խումբ երիտասարդ ֆիզիկոսներ իրենց ուսերի վրա հիվանդանոց հասցրին Էնգստրեմի ծանր ապարատը՝ «արհեստական թոքերը»։ Անհրաժեշտ դեղամիջոցներ ուղարկվեցին նույնիսկ արտասահմանից։ Լոնդոն—Մոսկվա ինքնաթիռը օդ բարձրացավ մեկ ժամ ուշացումով, որպեսզի նշանավոր ֆիզիկոս սըր Ջոն Դուգլաս Կոկրոֆտը դեղամիջոցը հասցնի օդանավակայան։ Քառասուն օր Լանդաուին պահեցին արհեստական շնչառությամբ։ Դիետոլոգ բըժիշկները նրա համար մշակեցին հատուկ կերակրատեսակ։ Ստեղծվել էր հատուկ շտաբ, որտեղ հերթապահության ցուցակում ընդգրկված էր 87 մարդ։ Մեկ և կես ամիս անց Լանդաուի կյանքը փրկված էր։

պարտավոր է վեր հանել բարդ երևույթների հիմքում ընկած բնության օրենքների իսկական պարզությունը։

◆ — Հերոսները երբեք հերոսական տեսք չեն ունենում։ Այդպիսի տեսք ունեն վախկոտները։

◆ — Ես կյանքից կորցրի մեկ տարի, բայց այդ ժամանակամիջոցում հասկացա, որ մարդիկ ավելի լավն են, քան կարծում էի։

◆ — Գիտության մեջ ճշմարտությունները միշտ էլ իրենց համար ճանապարհ գտնում են։

◆ — Ամեն ինչ կատարեք ոգևորությամբ, դա անչափ զարդարում է կյանքը։

*Հավաքեց ԱՆՈՒՇԱՎԱՆ ԴԵՎԿԱՆՑԸ*

# ԴԵՊԻ ԱԿՈՒՆՔԸ ԵՐԳԻ



ՄԱՐՈ ՄՈՒՐԱԴՅԱՆ

1977 թվականին հայկական գիտությունների ակադեմիայի լեզվի ինստիտուտի ավագ գիտաշխատող, այժմ պետական համալսարանի դասախոս Մարո Մուրադյանը մի առիթով մտերիմների համար ժողովրդական մի երգ է երգում (նա ժողովրդական երգերի վարպետ կատարող Հայրիկ Մուրադյանի դուստրըն է)։ Երգի առաջացրած ոգևորությունն այնքան մեծ էր, որ ընկերները խնդրում են իրենց էլ սովորեցնել ժողովրդական երգեր։ Նա սիրով հանձն է առնում։ Հավաքվում են, սովորում, երգում։ Նրանց այնքան են գրավում ժողովրդական երգերը, որ սկսում են պարբերաբար հավաքվել։ Խումբը օրեցօրին մեծանում է։ Նույնիսկ փոքրիկ համերգներ են տալիս։ Մի քանի հաջողված ելույթներից հետո նրանց հրավիրում են հանդես գալ հեռուստատեսությամբ։ Հեռուստադիտողներին նույնպես հմայում է նրանց երգը, խնդրում են կրկնել։ Այսպես ճանաչվում են, սիրվում, սկսում պարբերաբար հանդես գալ տարբեր բեմահարթակներից։

— Մենք մեր երգերը ժողովրդից ենք սովորում և ձգտում ենք պահպանել ժողովրդական երգի ներքին կառուցվածքն ու հոգեբանական առանձնահատկությունները, — ասում է խմբի ղեկավար Մարո Մուրադյանը։

Խմբում երգում են տարբեր մասնագիտությունների տեր մարդիկ՝ ֆիզիկոսներ, մաթեմատիկոսներ, մանկավարժներ, ինժեներներ, քիմիկոսներ։ Երաժշտական կրթություն ունեցողներ էլ կան։

Շատ հարուստ է խմբի երգացանկը։ Հաճախ են խմբի անդամները մագնիտաֆոններով զինված շրջում հեռավոր գյուղերը, ձայնագրում ժողովրդի մեջ պահպանված երգերը և հետո անաղարտ կատարումով վերադարձնում ժողովրդին։

Վերջերս ազգագրական խումբն հանդես է գալիս ազգային տարազով։ Տարազը կարել և ասեղնագործել են խմբի աղջիկները։

Եթե ձեր մեջ ազգագրական խումբ կազմելու ոգևորություն առաջանա, ինքներդ էլ փընտրեք, հայտնաբերեք նոր երգեր, սովորեք իմացողներից։ Այսպիսով դուք էլ կգտնեք ժողովրդական երգարվեստի ակունքները գնացող ճանապարհը և մի օր այդ ճանապարհով կկարողանաք տանել շատերին, ինչպես «Լուսաշխի տան» ազգագրական խումբը։

Մ. ՈՍԿԱՆՅԱՆ

Լուսանկարները՝ ԴԱՎԻԹ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ

# ԱՆԱՊԱՏԻ ՓՇԱՎՈՐ

Դժոխային պայմաններ են իշխում մեքսիկական անապատներում: Անամպ երկնքից կլոր տարվա ընթացքում արևը շիկացնում է ավազուտները, իսկ անձրևները այստեղ խիստ հազվադեպ երևույթ են:

Սակայն ավազերի անապատում էլ բույսեր են աճում: Հիմնականում դրանք կակտուսներ են, զարմանահրաշ, անտերև, անհեթեթ ու տարօրինակ ձևի բույսեր: Հսկայական, ճյուղավոր մոմերի նման դրանք երբեմն հասնում են 20—22 մետր բարձրության, որոնց ցողուններն ու ընձյուղները ծածկված են մանր ու խոշոր խիտ ճյուղերով:

Կակտուսների ձևերը խիստ բազմազան են՝ ժայռաձև, սյունաձև, օձաձև, գնդաձև: Դրանք չափազանց գեղեցիկ են հատկապես ծաղկման շրջանում: Գունագեղ խոշոր ծաղիկները կարծես մի տեսակ չեն սազում այդ անճոռնի ու անհեթեթ բույսին:

*Գնդաձև կակտուսներ*





*Մեքսիկական կակտուսներ*

Իսկ ինչո՞ւ են կակտուսները այդպիսի անհեթեթ տեսք ընդունել. ո՞ւր են անհետացել դրանց տերևները:

Միլիոնավոր տարիներ շարունակ աճելով անապատի դաժան պայմաններում, կակտուսները մշտապես խոնավության պակաս են զգացել։ Սովորական բույսերին խիստ անհրաժեշտ ու քնքուշ տերևները կակտուսների համար մեծ շռայլություն են հանդիսացել, քանի որ հսկայական քանակությամբ խոնավություն էին գոլորշիացնում: Եվ ահա, բույսը «գտել է» հնարը: Տերևները աստիճանաբար վերածվել են սուր-սուր փշերի: Բայց չէ՞ որ ամեն մի բույս սնվում, ֆոտոսինթեզ է կատարում տերևների միջոցով, որոնք մեծ քանակությամբ քլորոֆիլ են պարունակում: Բույսը դրա հնարն էլ է

# ԲՆԱԿԻՉՆԵՐԸ

«գտել»: Միլիոնավոր տարիների ընթացքում կակտուսի ցողունները սկսել են լայնանալ, տափակել և քլորոֆիլ կուտակելով իրենց վրա են վերցրել տերևների պարտականությունը՝ ֆոտոսինթեզ կատարելը: Միաժամանակ լայնացած, հաստացած ցողուններում հատուկ ռեզերվուարներ, անոթներ, «ջրամբարներ» են առաջացել, որտեղ տարվա անձրևոտ եղանակի ժամանակ պոմպի նման ջուրը ներծծող արմատների շնորհիվ կուտակվում է կենարար խոնավությունը, որը հետագայում՝ ամբողջ տարվա ընթացքում խնայողաբար ծախսվում է բույսի կողմից: Այդ է պատճառը, որ կակտուսներին «կանաչ ուղտ» են անվանում:

Փշերի վերածված տերևները մեծ անհրաժեշտություն են կակտուսների

*Կակտուս-օպունցիա*





*Օձաձև կակտուս*

համար, քանի որ անապատի խոտակեր կենդանիները՝ անտիլոպներն ու բզեզները շատ են սիրում սնվել «կանաչ մսով», իսկ «փշերը զսպում են նրանց ախորժակը»:

Համեղ ու արժեքավոր են կակտուսների պտուղները, որոնք թուզ են հիշեցնում: Դրանք օգտագործվում են թարմ վիճակում, պահածոյացվում են, մուրաբա, ջեմ պատրաստում, դրանցից ստացված ներկանյութը օգտագործում են հրուշակեղենի արդյունաբերության մեջ: Կակտուսի անփուշ տեսակները, որը սելեկցիոն ճանապարհով ստացել է ամերիկացի գիտնական Լութեր Բերբանկը, օգտագործվում են որպես հյութալի անասնակեր:

ԼԵՎՈՆ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ
*կենսաբանության դոկտոր, պրոֆեսոր*




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15:
Հեռախոսներ՝ 56-82-72, 58-08-38, 56-14-96:

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

# № 5 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1980



Շապիկի առաջին էջը՝ ՌԱՖԱՅԵԼ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր):

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ

Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

ՎՖ 04762: Պատվեր 521: Տպաքանակ 52144: Տպ. 3 մամ.: Թուղթ՝ 70×90 1/16: Հանձնված է արտադրության 1/IV 1980 թ.: Ստորագրված է տպագրության 20/V 1980 թ.:

ՀՍՍՀ հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91:




# ԽԱՉԲԱՌ



Հորիզոնական

3. 7-րդ դարի հայ գիտնական: 6. Երաժըշտական գործիք: 7. Կենցաղային իր: 10. Գույն: 12. Լեռ Հայաստանում: 14. 19-րդ դարի բանաստեղծ-պատմաբան: 16. Ֆրանսիացի գրող և քաղաքական գործիչ: 17. Գետ Ֆրանսիայում: 18. Գետ Հայաստանում: 19. Ընտանի թռչուն: 21. Քաղաք Ճապոնիայում: 22. Ավտոբուսի մակնիշ: 27. Միրգ: 28. Քաղաք Բելոռուսիայում: 31. Անապատային բույս: 32. Արվեստի բնագավառ: 33. Մերձարևադարձային պտուղ: 36. Պետություն Կենտրոնական Ամերիկայում: 38. Սողուն: 39. Ջկնորսական պարագա: 40. Բրածո սողուն:

Ուղղահայաց

1. Մամուլի տեսակ: 2. Անապատ Աֆրիկայում: 4. Հողագործական գործիք: 5. Երկրաչափական մարմին: 8. Կինոցուցադրման միջոց: 9. Բառակազմական ձևույթ: 11. Հագուստ: 13. Ֆուտբոլային թիմի անուն: 15. Անձնական դերանուն: 16. Քաղաք Կրասնոդարի մարզում: 19. «Վերք Հայաստանի» վեպի հերոս: 20. Տղայի անուն: 23. Կավե աման: 24. Շաբաթվա օր: 25. Մոլորակ: 26. Մոլորակ: 29. Կենցաղային իր: 30. Խաղի անհրաժեշտ պարագա: 34. Կահույք: 35. Դըպրոցական պիտույք: 36. Ուղղաթիռի մաս: 37. Տարվա եղանակ:

*Կազմեց ՄԱՅԻՍ ՄԻՆԱՍՅԱՆԸ*

## №: 4 ԲԱՌԱՇՂԹԱ-ԳԱՂՏՆԱԳԻՐ №: 4

### ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

1. Օլիմպիադա: 2. Աթենք: 3. Քուբերտեն: 4. Նոկդաուն: 5. Նիզակ: 6. Կուզնեցով: 7. Վարդանյան: 8. Նակատա: 9. Աստախովա: 10. Անտվերպեն: 11. Նետաձիգ: 12. Գավաթ: 13. Թիմ: 14. Միլս: 15. Ստարտ: 16. Տարմակ: 17. Կիմ: 18. Մարզիչ: 19. Չիժովա: 20. Ազարյան: 21. Նադիգ: 22. Գոլ: 23. Լող:

Գաղտնագրի պատասխանները

Մոսկվա: «Արագ, բարձր, ուժեղ»:

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806

ԵՐԵՎԱՆԻ ՄԱՆԿԱԿԱՆ ՊԱՏԿԵՐԱՍՐԱՀ



«Վարդան Մամիկոնյան»— Գործ՝ ԿԱՄՈ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԻ 11 տ., Երևան